





ՓԵՏՐՎԱՐԻ 20—21-Ը ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ 27-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ, ՈՒՐ ՔՆՆԱՐԿՎԵՑԻՆ ՆԱԽՈՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՑ ՄԻՆՉԵՎ ԱՅՍ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՆ ԸՆԿԱԾ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅԱՆ ԿՈՄԵՐԻՏՄԻՈՒԹՅԱՆ ԿԱՏԱՐԱԾ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐՆ ՈՒ ԾՐԱԳՐՎԵՑԻՆ ՀԵՏԱԳԱ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ։

*ՆԿԱՐՈՒՄ.—Մայրաքաղաքի պիոներները Հայաստանի լենինյան կոմերիտմիության 27-րդ համագումարի օրերին պատվո պահակ են կանգնել մեծ առաջնորդ Վ. Ի. Լենինի հուշարձանի մոտ։*



# ՄԱՆՈՒԿՆԵՐԻ ՀԵՏ

ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ

Նկ. Ալ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Արթնացել է Գորկան կանաչ,
Այնտեղ մարգեր թովիչ,
Սոսիներն են շրշում կամաց
Առավոտյան հովից:
Ահա Իլյիչը ծառուղում՝
Բանկոնն ուսին գցած,
Ծիծեռնակներն են ճռվողում,
Օդում հազարաձայն:
Զբոսնում է նա պուրակում,
Շուրջը՝ գարուն, արև,
Առավոտն է կարծես երգում
Գարնան ձայնով ջահել:
Ցանկապատից այն կողմ՝ մանկանց
Ուրախ աղմուկ ու ճիչ,
Նա ձեռքով է անում նրանց՝
Մանուկներին այն ջինջ:
Կկոցում է աչքերը շեղ,
Նայում է արևին,
Թեև ինքը վառ ու անշեջ
Հզոր արև է մի:
Եվ պուրակ են մտնում խնդուն
Մանուկները կայտառ
Եվ Իլյիչին շրջապատում
Ծաղկած լորենու տակ:
Իլյիչն հիվանդ է, բայց հոգում՝
Տխրության ոչ մի հետք.
— Ես ինձ այնպես լավ եմ զգում,
Երբ որ դուք եք ինձ հետ:

# ԹԱՆԳԱՐԱՆՈՒՄ

ԱՐՇԱԼՈՒՅՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Մոսկվա: Վլադիմիր Իլյիչ Լենինի թանգարան:

Անվերջ ելնէջում են հարահոս էսկալատորները՝ վեր-վար տանելով աշխարհի բոլոր ծայրերից ժամանած այցելուներին: Մտովի քայլում ենք մեծ առաջնորդի հետքերով:

Ահա Սիմբիրսկ (այժմ՝ Ուլյանովսկ) քաղաքը՝ տարածված Վոլգայի ափերին: Ահա Ուլյանովների՝ այդ փողոցի մյուս տներին հար ու նման տունը, ուր ծնվել է Վոլոդյան, դպրոցը՝ ուր սովորել է նա: Ապա հերթականությամբ աչքիդ առջևով անցնում են՝ Կազանի համալսարանը, Պետերբուրգ, Լոնդոն, Փարիզ, Ժնև, Բեռլին, Ցյուրիխ, Կապրի և շատ ուրիշ քաղաքներ, ուր գործի բերումով այցելել ու ապրել է Իլյիչը: Ահա և Շուշենսկոյե աքսորավայրը... Այնուհետև Մեծ հոկտեմբերը, Մոսկվան, 1917 թվականը...

Ահա հարազատ մարդու համեստ զգեստները՝ վերարկուն, կոստյումը, գլխարկը, ժամացույցը: Վավերագրական բազմապիսի ցուցանմուշներ, արվեստի երկեր, կոմպոզիցիոն կտավներ, գեղանկարչական, քանդակագործական գլուխ-գործոցներ... Եվ դեռ գալիս են՝ պիոներ-դպրոցականներ, բանվորներ, կոլտնտեսականներ, մտավորականներ, օտարերկրյա զբոսաշրջիկներ... խումբ-խումբ անցնում են հարկից-հարկ, բաժնից-բաժին:

Անվերջ ելնէջում են հարահոս աստիճանները՝ վեր ու վար տանելով այցելուներին:

Երրորդ հարկումն ենք: Դահլիճներից մեկում խմբված ծանոթ պատանիներն ու աղջիկները լուռ ակնածանքով լսում են էքսկուրսավարին: Ովքե՞ր են: Դպրոցականնե՞ր: Իրոք որ: Բայց ինչ-որ տարօրինակ են պահում իրենց: Ցուցանմուշներով կարծես չեն հետաքրքրվում, չեն նայում: Գլխահակ, լուռ լսում են:

Հենց այդ պահին, խմբից մի դեռահաս աղջնակ «զաղտագողի» ձեռքը սահեցնում է իր կողքի պատվանդանին դրված առաջնորդի բրոնզյա կիսանդրու վրայով... Հուշիկ սահեցնում է ձեռքը, մոմակերպ մատները խաղում են քանդակագործ Ն. Տոմսկու կերտած կիսանդրու դեմքին, ճակատին... Գլուխը խոնարհած, քաղցրանուշ ժպտում է աղջիկն ու թըվում է ահա, ահա ճանաչեց: Չէ՞ որ վաղուց ծանոթ ու հարազատ դիմագծեր են:

Աղջիկը թեքվում, կողքին կանգնած ընկերուհու ականջին ինչ-որ բան է շշնջում:

Սա նույնպես կենտրոնացած, ուշադիր շոշափում է կիսանդրու դեմքը, ճակատն ու երանավետ ժըպտում, որից, թվում է, միանգամից լուսավորվում է նրա մթամած դեմքն ու աչքերը: Էքսկուրսավարը մի պահ կանգ է առնում, զայրացած նայում է... չէ՞ որ արգելված է ցուցանմուշներին ձեռք տալը: Նա ուզում է զգուշացնել, սակայն կարկամած լըռում է:

Լռում է ու նայում...
Նայում է ու լռում...
Չէ՞ որ կույր են նրանք:
Կույրերի դպրոցի սաներ են:
Կույր են, բայց ուզում են տեսնել Լենինին:

## ՎԱՐՈՒԺԱՆԻՆ

*ԽԱԽՈՒԿ ԲՈՒՈՐՋՅԱՆ*

Գարնան առաջին
Ամպը որոտաց.
Անձրևն առաջին
Քո մանկությունն է։
Ճերմակ անկողնից
Զնծաղիկն ելավ,
Գնա գուրգուրի՛ր,
Նա քո քույրիկն է։
Ժիր առվակները,
Տե՛ս, ծափ են տալիս՝
Այդ քո լեզվով է
Գարունը գալիս։
Բողբոջող ծառը
Ծուտով կխոսի.
Քեզ ի՛նչ պիտի տա,
Ամռանը կասի։

## ԱՊՐԻԼ

*ԶԱՎԵՆ ԿԱՍՅԱՆ*

Կանաչ ապրիլ է նորից,
Մանուշակներն են-բուրում,
Հովը հեռու սարերից
Լեռների շունչն է բերում...
Աղբյուրներն են կարկաչում,
Զով լեռներից գալիս ցած.
Ու միմյանց են ծայնակցում
Հավք ու զեփյուռ խենթացած...
Համբուրվում են կարոտով
Հողն ու երկինքն իրար հետ,
Ու ջրերն են միանում,
Դառնում առու, դառնում գետ...
Ծաղկաթերթերն է բացել
Ծիրանի ծառն ժպտերես,
Արևը խինդ է դարձել
Ու գուրգուրում է մոր պես...
Կանաչ ապրիլն ամենուր
Կանաչ գորգեր է փռել,
Ծառ ու թփին՝ մայրություն,
Հողին՝ բերքրանք է բերել...

1

Լինում է չի լինում, Արտաշատի Լանջազա
գյուղում Սարգիս անունով մի երիտասար
է լինում։

Այդ Սարգիսը մի օր վերցնում է ուռ
կանն ու գնում է Ազատ գետը՝ ձուկ որսալու։ Ուռկա
նը գցելով գնում-գնում, հասնում է Գառնի գյուղ
ներքևը, բայց ոչ մի ձուկ չի բռնում։ Զարմանում
Սարգիսը, ախր Ազատ գետում շատ ձուկ կար, ա
ո՞ւր են քոչել։

Պատահում է մի մարդու ու հարցնում է.

— Ա՛յ մարդ, բա մեր Ազատ գետի կարմրախա
տըն ո՞ւր գնաց...

— Գնաց ագահ մարդկանց փորը,— պատասխա
նում է մարդը։

Սարգսի թևերը թուլանում են։ Բա, ուրեմն, վեր
մեր Ազատ գետի կարմրախայտին...

Հետո մտածեց, որ Ազատ գետը առանց կարմրա
խայտի գետի նման էլ չի լինի... Առանց ձկա
էլ ի՞նչ գետ...

Եվ Սարգիսը մտքում մի բան որոշեց ու մտա
այն ահռելի կիրճը, որ Խոսրովի անտառից իջնում
Զանլաթլվի ձորը։ Այդ կիրճի հատակում գոռում-գ
չումով ցած էին իջնում Գեղամա բարձունքների
եկող ջրերը։ Այդ գետակի ափնիվեր այնքան գնա
Սարգիսը, որ կիրճը վերջացավ, կանաչ մարգագ
տիններ սկսվեցին, որոնք վերևից եզերված էին նու
անտառներով։ Ժայռերի վրա կիսակործան պարիսւ
ներ էին երևում, հնադարյան պալատների մնացոր
ներ, մամռակալած վանքեր. Սարգիսը հասել էր Ա
շակունի հայ թագավորների ամառանոցը։

Վերևում՝ ապառաժե պարիսպների տակից, հո
դառատ աղբյուրներ էին բխում և խայտալով ու ա
կայծելով ցած վազում։ Նրանց վրա խոնարհվել է
մրգերով բեռնավորված ընկուզենիները։ Անտա
տրաքվում էր վայրի մրգերից՝ է՛լ տանձ, է՛լ խն
ձոր, է՛լ սիզն։ Իսկ ծառերի տակ քեֆ էին անում ա
բնության վայրի բնակիչները՝ բրդոտ արջերն իրե
քոթոթներով։

Նայում էր Սարգիսն այդ հեքիաթային աշխարհի
հոգին լցվում-լցվում, բայց աչքը շարունակ վազ
ջրերի մեջ էր։ Վերջապես իր փնտրածը գտավ. խ
ղաղ մի ջրափոս հեռվից հուրհրատին էր տալիս ն
կլայեկած կաթսայի նման։ Պարզ է, ձկներն են հ
տակի տիղմը մաքրել իրենց թավ պոչերով։ Տեսող
թյունը լարեց և վերջապես նկատեց այն, ինչին սպ
սում էր։ Ջրի ծանծաղ տեղում հեզանազ շորորում
մի կարմրախայտ ձուկ։ Նա լայն պոչով կարծ
քնքշորեն շոյում էր հատակի ավազը։

— Է՜հ, լավ է, ձկնգողերն այստեղ չեն հասել
ուրախ մտածեց Սարգիսը, ուսից ցած բերեց թ
ուռկանը ու պառկեցրեց։



# ԳԵՐԻ ՁԿՆԵՐԻ ՀԵՔԻԱԹԸ

ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Կուզեկուզ մոտեցավ գետակին, ուռկանը նետեց։ Մի այլ լճակի մոտեցավ, դարձյալ ուռկանը նետեց, մինչև որ բռնվեցին առաջին ձկները։ Կանաչ ափին ընկած՝ նրանք շնչակտուր էին լինում, լայն բերանները բացուխուփ անելով՝ ջուր էին աղերսում, ինչպես որ մենք օդ ենք աղերսում։

— Մա՛րդ արարած, խղճա՜ մեզ,— հանկարծ լսեց Սարգիսը մի նվաղող ձայն և այդ ձայնից փշաքաղվեց։

— Մի՜ սպանի մեզ, բարի՛ մարդ,— լսվեց մի ավելի բարակ ձայն։

Ձկներն էին։

— Լավ,— ասաց Սարգիսը,— ձեր կյանքը ձեզ բաշխեցի։ Բայց ձեզ տանելու եմ Լանջազատ։

— Լանջազատը չե՞նք ուզում, Սաքո՛, մեզ էլի ջուրը գցիր, առանց ջրի մենք խեղդվում ենք...

— Դե՛, դո՞ւք գիտեք...

Ու Սարգիսը շարունակեց կուզեկուզ անել ու նետել իր ցանցը։

— Լա՛վ, համաձա՞յն ենք, Լանջազա՞տ տար, միայն թե մեզ մի՛ սպանի,— լսվեց ձկան հուսահատ կանչը։

— Էդ ուրիշ բան...

Սարգիսը ձկնորսության գնալիս հետը միշտ մի դույլ էր տանում։ Դույլը լցրեց ջրով և ձկներին բաց թողեց նրա մեջ։

— Օխա՜յ, օրհնվի քո ձեռը, բարի՛ մարդ,— օրհնեց ամենածեր ձուկը, որի գլուխը մեծ էր, իսկ մարմինը նիհար։

2

Երեկոյան Սարգիսը հոգնած ու թրջված լեռներից իջավ գյուղ և ջրով լիքը դույլը դրեց տան շեմքին։

— Վի՜յ, ձկնե՜րը, ձկնե՜րը,— ծափ զարկելով դույլը շրջապատեցին երեխաները։

— Ձկնե՞րը... էդ որտեղի՞ց,— ու Սարգսի հայրը՝ Անդրանիկը ծանր-ծանր առաջ եկավ։— Ա՛յ տղա, մեր ջրերում կարմրախայտ չի մնացել, էս որտեղի՞ց,— զարմացավ նա՝ դույլին նայելով։

— Սաքոյին էլ կասեն որտեղի՞ց... էն ջրերից, որտեղ Խոսրով թագավորի որդին էր ձուկ բռնում,— պարծեցավ նա։

Ծիծաղեցին. բոլորն էլ ուրախ էին, որ Սարգիսը վերադարձել է առատ որսով։

— Կնի՛կ, մի կրա՛կ վառիր մեր որդու որսը վառելենք,— պատվիրեց տանտերը զվարթացած։

Թռունիկ ձկնիկը, որ ուշադիր նայում էր երեխաներին և զարմանում էր այն խոշոր մարդու բեղերի վրա, աշխույժ խայտալով մոտեցավ իր մռայլ պապիկին և ասաց.

— Ինչ լա՜վն է նրանց պապիկը, ինչքան ուրա՜խ է, իսկ դու միշտ մռայլ, խիստ...

— Ձայնդ կտրի՛ր, հիմա՛ր... Ուրախ է, որովհետև քեզ ուտելու պատրաստություն է տեսնում։

Սարգսի հայրը շտապեցնում էր կնոջը.

— Սիրանո՛ւշ, ի՞նչ բանի ես... Սաքո՛, իջիր նկուղից մի գավ գինի՛ բեր... Կարմիր գինի, խաշած ձկան վրա կարմիրն է հարմար...

Նրա այս ուրախ խոսքի վրա ծեր Մեծագլուխի արյունը սառավ երակներում. խսկապե՞ս իրենց սպանելու են։ Եվ նա դույլի միջից աղաչեց աղիողորմ ձայնով.

— Մարդի՜կ, մեզ մի՜ սպանեք... Ախր մենք ձեզ ի՞նչ վատ բան ենք արել։

Այդ ձայնից Սարգսի հայր Անդրանիկը թեև անակընկալի եկավ, բայց իրեն հավաքեց ու պատասխանեց.

— Դե որ կարմիր գինու մոտ եք եկել, ձեր վերջը պարզ գիտե՛ լինի ձեզ համար...

Այդտեղ ձկնորս որդին ապստամբեց հոր դեմ.

— Սրանց ես բռնել եմ, որ տանեմ բաց թողնեմ Ազատ գետում։ Ուտելու մասին չխոսես։

Հայրը զարմացավ։

— Ա՛յ տղա,— ասաց,— էդ ո՞ր խելոքն է, որ իր բռնած ձկներին նորից բաց է թողնում։ Հիմար-հիմար բաներ մի՛ ասի, գնա գինի՛ բեր...





— Բա մեր Ազատ գետը առանց կարմրախայտի՞ մնա,— բողոքեց որդին:

— Ջհանդա՛մը թե կմնա... Ազատ գետի ափին տասը գյուղ կա, ամեն գյուղում՝ հազար մարդ, թող նրանք մտածեն: Կնի՞կ, ի՞նչ ես մոլորվել...

Իսկապես մոլորվել էր պառավ Սիրանուշը: Իր բարի որդու առաջարկը նրա սրտովն էր, իսկ այն ծեր ձկան աղաչանքը դեռ հնչում էր ականջում. «Խնայե՜ք մեզ, մի՛ սպանեք...»

Ծեր Անդրանիկը գոռգոռաց, բարկացավ, բայց երբ թոռնիկներն էլ հայտարարեցին թե՝ «Մենք չենք թողնի, որ մեր ձկնիկներին եփեք»,— նահանջեց, հուսահատ նստեց թախտին և քիչ էր մնում լաց լինի:

— Բա մարդ էլ իր բռնած որսը նորից բա՞ց կթողնի,— զանգատվում էր նա դառնացած:— Ա՛յ որդի, խելք ունես, բե՛ր ուտենք, գինին վրան խմենք մեր պապերի նման...

Սարգիսը նրան պատասխանելու փոխարեն դարձավ երեխաներին.

— Դույլերով թարմ ջո՛ւր բերեք. ձկները խեղդվում են:

Աղբյուրի ջուր բերին գերիների համար, բայց գիշերը հարկավոր էր մի քանի անգամ փոխել ջուրը: Այն ժամանակ որոշեցին ձկներին բաց թողնել բակի ավազանում, ուր խայտում էին նախորդ օրերին Սարգսի բռնած ուրիշ տեսակի ձկներ ևս, և նրանց մեջ ամենից լավը՝ դեղնավուն լաքաներով բեղլուները:

3

Հաջորդ օրը լույսը դեռ չէր բացվել, երբ Լանջազատ գյուղացի, Գառնի-Արտաշատ ջրատարի Արտաշատ-Ջովաշեն գծամասի պետ Սարգիս Պետրոսյանը նստեց հիմնարկի «վիլիսը», ջրով լիքը բիդոնը տեղավորեց նրա մեջ և շտապ դուրս եկավ գյուղից: «Շուտ փրկեմ սրանց, քանի հայրս չի արթնացել»,— մտածեց նա:

Մեքենան քշեց Ազատ գետնիվեր և կանգ առավ մի խոր ձորում, որի հատակից մինչև ամպերը հարկ առ հարկ ժայռեր էին բարձրանում և նրանց կատարին թառել էր Տրդատ թագավորի հինավուրց ամրոցը իր հեթանոսական տաճարով:

— Այստեղ հարմար է,— ինքն իրեն ասաց մարդը՝ բիդոնը մեքենայից իջեցնելով:

— Այստեղ չենք ուզում,— բողոքեց մեծագլուխը:— Այստեղ էր, որ չար մարդիկ ջնջեցին իմ ցեղակիցներին...

Սարգիսը մնաց մոլորված:

— Բա ո՞ւր տանեմ ձեզ,— նեղացավ նա:

— Վերև՜, վերև՜, դեպի լեռները,— աղաչեց ձուկը:

— Վերև՞... հեշտ է ասել... Ճամփա կա՞, որ տանեմ: Դե լավ, ինչ արած, ընկել ենք, պիտի քաշենք. նստեցեք գնա՛նք...

Ծանր բիդոնը նորից տնքալով դրեց մեքենայի մեջ և դժվարին ճանապարհներով հասավ Գողթ գյուղի ձորը:

— Էլի՛ վերև, էլի՜...Այստեղից են փախել իմ ծնողները ու մի կերպ Խոսրովի գետակը հասել,— նորից լսվեց ծեր Մեծագլուխի ձայնը:

Սարգիսը տնքալով բիդոնը բարձրացրեց, որ դնի մեքենայի մեջ, տեսավ փոքրիկ կարմրախայտի փորը սպիտակին է տալիս, շուռ է եկել մեջքի վրա, իսկ մյուս ձկները երերում են հարբածի նման:

— Էլի ջրի միջի թթվածինը վերջացավ... Թո՜ւհ... դե արի շուռ տուր, նորից ջուր լցրու.. Էս ի՞նչ գլխացավանքի մեջ ընկանք, տո՜...

— Ոչի՜նչ, բարի՛ մարդ, ա՛յս անգամ էլ ջուրը փոխիր՝ ուշքի գանք, մինչև տեղ հասնենք,— խնդրեց գերիների ղեկավար Մեծագլուխը:

Սարգիսը վաթսուն կիլո ծանրությունը տնքալով մի կերպ տարավ գետի ափը, ջուրը դատարկեց, նորը լցրեց ու նորից տնքտնքալով տարավ դրեց մեքենայի մեջ:

— Էս վերջինը լինի,— զգուշացրեց նա իր գերիներին:— Մեկ էլ որ ջուր եք ուզել՝ ետ եմ թեքում ձեզ ուղիղ տանեմ Լանջազատ՝ հորս մոտ...

— Էլ չե՜նք ուզի, չե՜նք ուզի,— միաբերան նըվնըվացին գերիները:— Լավ է այստեղ մեռնենք, քան գնանք քո հոր մոտ... Նա մեզ կուտի, գինին էլ կխըմի վրան...

— Կուտի, բա՜... Ախր դուք չգիտեք, որ ձկների մեջ ամենից համովը դուք եք: Այնպես որ իմ հոր հացեին էլ բան չլսեմ, թե չէ... Դեհ, նստեցի՞նք... Գնացինք...

Այս անգամ Սարգիսն իր բեռը տարավ ուղիղ Գեղարդի վանքերի տակ:

— Էս ջրից լավ ջուր չեք գտնի, սրանից էլ ապահով տեղ չկա: Դե, պատրաստվեցե՛ք, ազատություն եմ տալիս ձեզ:

Ու բիդոնը տնքտնքալով տարավ փրփրած գետակի մոտ:

— Այստեղ էլ՝ չենք ուզում... Այստեղ անհաշիվ մարդ է ուխտի գալիս: Հեռո՛ւ, մեզ հեռո՛ւ տար մարդկանցից...

Սարգսի համբերությունը վերջացավ:

— Տո ես ձեր հոր մշակնե՞մ,— որոտաց նա ձկների վրա:— Էս ի՞նչ կապրիզնի եք: Էսպես էլ գերիներ կլինե՞ն, տո՛...

Գոռգոռաց, վրդովվեց, բայց երբ տեսավ նորից են շնչակտուր լինում, երբ տեսավ, որ այն փոքրիկ կարմրախայտը ուշաթափվել է ու նորից ճերմակ փորը երկնքին արել, հետզհետե մեղմացավ ու ինքն իրեն շշնջաց. «Ախր կարմրախայտին մեր ջրերի թագուհի են ասում... Բա մարդ թագուհու վրա կգոռգոռա՞...» Դրա հետ միասին Սարգիսը մտածեց, որ իր արած գործը մեծ գործ է, բարի գործ է, բա քի՞չ բան է այդ գեղեցիկ արարածներին բնակեցնելը հայրենի ջրերում: Չէ՛, այդպիսի գործի համար մարդ նեղություն էլ պիտի քաշի՛, բիդոնն էլ շալակի՛:

Եվ ձկները զարմացած տեսան, որ Սարգսի դեմքը փոխվեց, հիմի էլ ժպտում է բարությամբ: Ու մտերիմ, տնավարի ասում է.

— Դե եկեք էլի՛ սնունդ տամ... Ձեզ տանելու եմ հասցնեմ Աժդահակի գլուխը. էնպես մի սիրուն աշխարհ, որ ձեր պապերն էլ տեսած չլինեն...

Ասաց, մեքենան քշեց ետ եկավ մինչև Գողթ ու այնտեղից բռնեց քոչվորների սարի ճամփան: Փռնչոցով, տնքոցով, կաշվից դուրս գալով, պողպատե հրեշը թիկունքի կողմից պատ տվեց սարը, դուրս եկավ Գեղարդա դիք-դիք ժայռերի գլուխը: Այդտեղից մի սիրուն աշխարհ էր բացվում. տափարակներ ու ծաղկավետ լանջեր էին փռվում մինչև ծեր Աժդահակի բարձունքները: Քշեց մինչև լեռնային արոտները և կանգ առավ մի զուլալ լճի առաջ, որ մարդիկ էին կառուցել՝ արոտները ջրելու համար և Գեղարդա վանքի պատվին անունը դրել էին Վանքի լիճ: Լիճը շրջապատված էր մի կանաչ մարգագետնով, որ հնում Բեգի-յուրդ անունն էր կրում՝ իր հոտերն ամառն այդտեղ պահող մի քուրդ բեգի անունով: Լճի առաջ մի բարձր-բարձր ամբարտակ էր կանգնած, իսկ նրա թիկունքում ձգվում էին ձնհալից և աղբյուրներից հավաքված ջրերը: Ծաղկանկար կանաչ շրջանակի մեջ այնպես էր առկայծում այդ լճակը, որ նայում էին ձկները ու նրանց թվում էր, թե հեքիաթի մեջ են:

Իսկ Սարգիսը՝ հոգին բերկրանքով լիքը, նայում էր այդ բարձունքից հայոց աշխարհին ու խոսում էր ձկների հետ, ինչպես մարդը մարդու հետ կխոսի.

— Էն մութ ձորերում փակված, չեք տեսել, թե ի՞նչ սիրուն աշխարհում եք ապրում: Դե՞նը նայեցեք, մեր դիմացինը Արարատներն են, է՛ն էլ Արաքս գետն է շամբուտների մեջ... Ներքևում Խոսրովի անտառներն են... Այն ձյունոտ գագաթներն էլ Արագածն է՝ Արայի լեռը իր թևի տակ ծվարած: Ամբողջ Հայաստանը ձեր ոտքերի տակ է, ջրի՛ թագուհիներ, նայեցե՛ք ջրի հայելու միջից մեր սիրուն աշխարհին ու բազմացե՞ք ազատ... Ու հիշեցե՛ք Լանջազատ գյուղացի Սարգսին, որ Ներքևի վտանգավոր ձորերից ձեզ էս ապահով ու սիրուն աշխարհը հասցրեց:

Ասաց ու շատ զգացվեց իր սրտառուչ խոսքի համար, մանավանդ որ քիչ հետո հրաժեշտ էր տալու իր գերիներին:

— Իսկ այստեղ ապահո՞վ է,— կասկածը սրտում հարցրեց ծեր Մեծագլուխը,— մարդը չի՞ հասնում:

— Հասնում է. ո՞նց չի հասնում: Բա որ չի հասնում, ո՞վ է ստեղծել այս հրաշք-ջրամբարը, ո՞վ է անթիվ առուներ փորել Աժդահակի լանջերին: Բա էն ո՞ւմ նախիրներն են ու հոտերն են հրեն, ծաղկոտ լանջերին արածում: Մարդը այստե՛ղ էլ է հասել, բարեկամնե՛ր, բայց մարդը ձեզ որսալու համար իր շինած ջրամբարի մեջ թույն չի լցնի և ոչ էլ ջուրը կպայթեցնի դինամիտով... Ապահով գնացե՛ք, մեկդ հարյո՛ւր դարձեք...

Այսպես ասաց լանջազատցի Սարգիսը և իր ծանր բիդոնը շուռ տվեց ջրի մեջ:

Ձկները սկզբում չհավատացին, որ իրենց ազատություն են տալիս: Ափի մոտ տատանվեցին, երերացին շշմած, ապա ուշքի եկան և իրենց ծեր առաջնորդի հետևից լողացին դեպի խորքերը:

Շարքի վերջում, իր շիկավուն և խալավոր կողերը արևի տակ շողացնելով՝ լողում էր այն փոքրիկը:

Ծեր Մեծագլուխը, որ կյանքի դառն փորձ ուներ, շտապում էր խումբը հասցնել ափից հեռու, ապահով խորքերը, նա շատ չէր վստահում Սարգսի քաղցր խոսքերին: Բայց երբ համոզվեց, որ հետապնդող չկա, շուռ եկավ և լողաց դեպի ափ՝ խումբն էլ հետևից: Եկան, շարքով անցան ափին կանգնած մարդու առջևից, բայց էլ ոչինչ չխոսեցին, որովհետև մեր այս հեքիաթն արդեն վերջացել է, իսկ ձկները խոսում են միայն հեքիաթներում:





# Ի՞ՆՉ ԿԱՐՈՂ Է ԱՆԵԼ ԲԱՆԱՍՏԵՂԾԸ

*ԱՐՇԱՎԻՐ ԱՎԱԳՅԱՆ*

Բանաստեղծը կարող է
Սովորական բառերով
Անսովոր մի աշխարհ ստեղծել։
Նա կարող է մի այլ երկինք ստեղծել,
Երկնքի տակ՝ հրաշք մի երկիր,
Եվ կարող է այնպես անել,
Որ երկնքում արևն ապրի,
Իսկ երկրի վրա՝ արևասիրտ մարդիկ։

Բանաստեղծը կարող է
Սովորական բառերով
Անսովոր լեռներ ստեղծել,
Ծովեր ու անտառներ։
Անտառները նա կարող է լցնել
Խորհրդավոր ծառերով,
Ծաղիկներով ու գազաններով։

Նա կարող է այնպես անել,
Որ ծաղիկները թռչեն թիթեռների նման,
Որ ծառերը սկսեն մտածել մարդու նման,
Եվ իրենց մտածումների մասին պատմեն
Թիթեռներ բռնող փոքրիկ աղջիկներին։

Բանաստեղծը կարող է այնպես անել,
Որ քարերն ու ջրերը սկսեն խոսել
Մարդկային լեզվով,
Իսկ գազանները այնքան խելոքանան,
Որ խրատեն չարաճճի տղաներին։

Բանաստեղծը կարող է
Խաղաղ ամպերի տակ կանաչ բարդիներ շարել,
Նրանց ճերմակ բներին դեղին երանգ տալ
Եվ կանաչ սրտերի նմանվող
Հազարավոր տերևներ կախել ծառերի ճյուղերից։

Բանաստեղծը կարող է այնպես անել,
Որ խաղաղ ամպերը մռայլվեն ու սևանան,
Աղմուկ-աղաղակով խփեն իրար
Եվ արտասուք թափեն ծառերի տերևներին։

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ
ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

### ՎՏԱ՞ԿԸ

Բարձր-բա՜րձր սարերից
Ցած էր գալիս մի վտակ,
Նա իր մորն էր կարոտել,
Անդունդի մեջ, ժայռի տակ։

Ես մոտեցա վտակին
Ու վազեցի իր ափով,
Ընկերացած նրա հետ՝
Իջանք ներքև, դեպի ծով։

Ես նստեցի ծովի մոտ,
Իսկ վտակը մտավ ծով
Ու խառնվեց ջրերին
Որդիական կարոտով։



### ՄԱՍՐԵՆԻ՞Ն

Նստած ժայռին, ջրվեժի մոտ,
Ջուր խմեցի զույգ ափով,
Կարկաչեց նա ջինջ, ծիծաղկոտ
Փախավ ուրախ ծափծափով։
Ափին բուսած այն մասրենուն
Զույգ ափով ջուր ցանեցի,
Եվ հոգուս մեջ ուրախություն՝
Ճերմակ մի վարդ պոկեցի։
Ու նայեցի երբ ես նրան,
Լաց էր լինում տխրորեն,
Որ իր ծաղիկն էի պոկել
Մի ափ ջրի փոխարեն։

*ԱՆԱՀԻՏ ՄԻՐԶՈՅԱՆ*
*Սպիտակ, 8-րդ դաս. աշ.*

ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

Բայց մինչև այդ,
Մինչև տեղատարափ անձրևի սկսվելը,
Բանաստեղծը կարող է նկատել
Մի փոքրիկ տղայի ու աղջկա,
Որոնք խաղում են հեռու դաշտերում:

Ու որ փոքրիկները չթրջվեն,
Որ փոքրիկները արագ վազեն տուն,
Նա կարող է այնպես անել,
Որ երկնքում ամպերը ուժգին որոտան:

Հետո միայն,
Երբ փոքրիկները տուն հասնեն,
Բանաստեղծը կարող է ներշնչանքի մեջ
Անձրևի տեղատարափ թափել
Ծառերի ու դաշտերի վրա:

Բանաստեղծը կարող է տեսնել
Կորիզի մեջ թաքնված ծառը,
Կորիզի մեջ թաքնված ճյուղերն ու տերևները
Եվ բողբոջները, որոնք բացվելու են մի օր
Ու դառնալու են անուշահամ խնձորներ:

Բանաստեղծը կարող է տեսնել
Ձմռան մեջ ննջող գարունը,
Ձյուների տակ շնչող
Հատիկների ոսկեգույն երազանքը
Եվ կապույտ մանուշակները,
Որոնք բացվելու են
Եվ իրենց բուրմունքն են տալու
Գարնանային առավոտին:

Բանաստեղծը կարող է տեսնել
Այն բալիկներին,
Որոնք քնում են իրենց խաղալիքների հետ,
Որոնք երազում են թռչունի նման հեռու
թռչելու,
Ձկների նման հեռու լողալու
Եվ հեքիաթային երկրներ հասնելու մասին:

Բանաստեղծը կարող է տեսնել
Այն բալիկներին, որոնք դեռ չեն ծնվել,
Որոնք ծնվելու են մի օր՝
Իսկական նավեր ու օդանավեր,
Իսկական տներ կառուցելու համար,
Որոնք տնկելու են նոր այգիներ
Եվ հատիկներ են տալու աղավնիներին:

Եվ վերջապես, բանաստեղծը կարող է
Սովորական բառերով ու պատկերներով
Մի քիչ անսովոր երգեր գրել,
Որոնք դուր գան մեծերին ու փոքրերին,
Որոնք փոքրերին օգնեն հասկանալու
Կյանքի և արվեստի գաղտնիքները,
Որոնք օգնեն նրանց մինչև վերջ լինելու
Քաջ ու ազնիվ,
Շիտակ ու բարի...

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ



# ՄԻ՛ ՑԱՏԿԻՐ ԸՆԹԱՑՔԻ ԺԱՄԱՆԱԿ

ՌՈԲԵՐՏ ԲԱԲԼՈՅԱՆ

*Սուխումիից ոչ հեռու գտնվում է Գալիա փոքրիկ կայարանը: Այստեղ գնացքը միշտ դանդաղեցնում է ընթացքը, բայց միշտ չէ, որ կանգ է առնում:*

*— Է՞հ, կրիայի նման է շարժվում,— ասաց Կարոն իրեն հասակակից մի անծանոթ տղայի, երբ գընացքն սկսել էր դանդաղեցնել ընթացքը,— այդպիսի արագության ժամանակ կարելի է տասն անգամ ցատկել գնացքից ու նորից բարձրանալ, եթե...*

*— Եթե այդ ասողը պարծենկոտի մեկը չէ,— ասաց անծանոթը:*

*— Ո՞վ է պարծենկոտը, ե՞ս,— ասաց Կարոն,— դե նայի՛ր:*

*Ցատկելը ցատկեց, բայց նորից չկարողացավ վեր բարձրանալ, քանի որ նախ աստիճանը շատ բարձր էր գետնից, տրամվայի նման չէր, և երկրորդ՝ գծերի երկարությամբ խճաքար էր լցված, վազելը դժվար էր, և երրորդ՝ գնացքը չգիտես ինչու արագությունը ավելացրեց: Ահա այդ պատճառով Կարոն հայտնվեց Գալիայի երկաթուղային կայարանի պետի առանձնասենյակում:*

*— Հիմա ի՞նչ ես ուզում ինձնից, գենա՛ց -վալե,— հարցրեց լիքը-լիքը, շիկամազ աբխազցին, մատներով թմբկահարելով սեղանը:*

*— Ուզում եմ հասնել իմ գնացքին,— ասաց Կարոն,— խնդրում եմ ինձ որևէ շոգեքարշով ուղարկեք:*

*— Ի՞նչ շոգեքարշ, լսի՛ր:*

*— Մի որևէ անպետք, հին շոգեքարշ:*

*— Նախ մենք անպետք շոգեքարշ չունենք, բացի այդ նույնիսկ ամենանոր գնացքով չես հասնի քո վագո-*

# ԵՐԳԻԾԱԿԱՆ ՄԱՆՐԱՊԱՏՈՒՄՆԵՐ

## (ՆՄՈՒՇՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆԻՑ)

### ԾՈՒՅԼ ՄԱՐԴԸ

Մի կին թոնրում հաց էր թխում, ամուսինը նըստել էր մոտը և չէր շարժվում: Կինն ասում է. «Ա՛յ մարդ, վե՛ր կաց գնա էն կողմը, թող հաց թխեմ»: Ծույլ մարդն ասում է. «Է՜հ, ո՞վ է մեկ էլ տեղից վեր կենում»: Կինը, ճարը կտրած, բռնում է կարպետի ծայրից և ամուսնուն քաշելով տանում է թոնրի մյուս կողմը: Ամուսինը նայում է չորս կողմը և ուրախացած ասում է. «Միշտ են ասում, որ մարդս անթև թռչում է. նոր թոնրի էն կողմումն էի, հիմա եկա էս կողմը»:

### ԳՅՈՒՂԱՑԻՆ ՈՒ ՏԱՆ ԿՏՈՒՐԸ

Մի գյուղացի ընտանիքով ապրում էր կտրածածկ տան մեջ: Տունը հին էր և շուտով կտուրը սկսեց ճաքճքել: Գյուղացին ամեն անգամ ցեխով լցնում էր ճաքերը: Մի օր էլ երբ գյուղացին դաշտից տուն եկավ, տեսավ, որ կտուրը փուլ էր եկել երեխաների վրա և բոլորին վնասել: Գյուղացին բարկացած ասաց. «Անտե՛ր կտուր, բա չկարողացա՞ր իմաց անել, որ փլվելու ես»: Կտուրը լեզու առավ և ասաց. «Քանի անգամ բերանս բաց արի, որ ասեմ, ամեն անգամ դու ցեխով ծեփեցիր բերանս. չուզեցիր լսել, ո՞վ է մեղավոր»:

### ՍՐԱՄԻՏ ՏՂԱՆ

Մի տղա, երբ ճաշի ժամանակ բերին տապակած վառեկները, հարցրեց քրոջը, թե քանի վառեկ կա ամանի մեջ:



— Չե՞ս տեսնում, ի՞նչ է, եղածը երկու վառեկ է, էլ ինչո՞ւ ես հարցնում,— ասում է քույրը:

---

*նին: Մեր բոլոր գնացքները գրեթե նույն արագությամբ են գնում:*

*— Բայց մենք առանց կանգառի կգնանք,— փորձեց բացատրել Կարոն, հետո գլուխը կախ շրջվեց, որ գնա, բայց պետը կանչեց ետևից.*

*— Ու՞ր ես գնում, տղա՛:*

*— Տատիս մոտ,— պատասխանեց Կարոն:*

*— Չեմ հարցնում ում մոտ, այլ որտե՞ղ ես գընում, ո՞ր քաղաքը:*

*— Մոսկվա:*

*— Հավանաբար ո՛չ փող ունես, ո՛չ տոմս:*

*— Չէ՛, տոմսը մոտս է,— ասաց Կարոն և վերնաշապիկի ներքին գաղտնի գրպանից ինչ-որ բան հանեց և դրեց սեղանին:*

*— Սա ի՞նչ բան է,— հարցրեց կայարանի պետը:*

*— Տոմս:*

*— Ի՞նչ տոմս:*

*— Կոմերիտական:*

*— Ի՞նչ գործ ունի այստեղ կոմերիտական տոմսը:*

*— Ինչպե՞ս թե, մեր դպրոցի դիրեկտորը, կոմերիտական տոմսերը տալով, ասաց, որ այժմ մեր առջև կյանքում բաց են բոլոր ճանապարհները:*

*Շիկամազ աբխազցին լայն ու հաճելի ժպտաց, հետո վերցրեց հեռախոսի ընկալուչը, ինչ-որ լծակ պտտեց և սկսեց գոռալ.*

*— Սուխումի՛, Սուխումի՛…*

*Խոսակցությունը վերջացնելով՝ նա իր մոտ կանչեց մի երկաթուղայինի, նրան մի թերթ թուղթ տվեց և ինչ-որ բան ասաց, հավանաբար աբխազերեն լեզվով, հետո դիմեց Կարոյին.*

*— Դե ի՞նչ, տղա՛ս, քո դիրեկտորը մասամբ ճիշտ է, կոմերիտական դառնալով՝ ձեր առջև իսկապես*

— Չէ՛, երկու հատ չէ, երեք հատ է: Ուզո՞ւմ ես հաշվենք:

— Հաշվի՛ր:

— Ահա նայի՛ր. սա մեկ վառեկ, սա էլ՝ երկու: Իսկ մեկ և երկու կանի երեք:

— Ճիշտ է ասածդ,— ասում է քույրը:

— Դե որ ճիշտ է, արի հիմա բաժանենք,— ասում է տղան,— էս մեկը՝ մայրիկիս, մյուսը՝ ինձ, երրորդն էլ՝ քեզ:

## ԱՅԾՆ ՈՒ ԳԱՅԼԸ

Մի այծ նստած էր բարձր պատին: Գալիս է մի գայլ և նստում նույն պատի տակ: Նայելով գայլին,



այծն ասում է. «Սիրտս ուզում է, որ իջնեմ ցած և եղջյուրներովս պատռեմ փորդ»: Ի պատասխան գայլն ասում է. «Երանի կլիներ իմ աչքերին, երբ տեսնեի, որ այծը գալիս է եղջյուրներով փորըս պատռելու»:

*բացվում են բոլոր ճանապարհները. տեխնիկումներ, ինստիտուտներ, հարվածային կոմերիտական կառույցներ... Բայց ո՛չ հիմա և ո՛չ էլ հետո կոմերիտական լինելդ մի՛ հիշիր միայն վատ վիճակի մեջ ընկնելիս: Գնա՛, քեզ կտանեն ուր հարկն է: Սրանից հետո երբեք ընթացքի ժամանակ չթռչես ո՛չ գնացքից, ո՛չ տրամվայից:*

*Պարզ է, Կարոն հիմա մեծացել է և այժմ տրամվայ նստելիս նա ոչ միայն չի մտածում ցատկել, այլև կանգնում է դռնից հեռու և երբ որևէ մեկը կանգնում է ոտնակին, նա կանչում է իր մոտ և պատմում է այս պատմությունը կամ ուղղակի ասում է.*

*— Մի՛ ցատկիր ընթացքի ժամանակ, միշտ չէ, որ դա հաջող է ավարտվում:*




*ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

Այսօր տիեզերագնացությունը չափազանց կարևոր դեր է կատարում մարդկային կյանքի բազմազան բնագավառներում: Երկրի արհեստական արբանյակների օգնությամբ հեռուստատեսային կապ է ապահովվում մեր մոլորակի հեռավոր ծայրամասերի միջև: Թռիչքների ընթացքում դիտվում են օդային զանգվածների ու ամպերի, ցիկլոնների ու օվկիանոսային սառցաբեկորների տեղաշարժերը: Դա հնարավորություն է տալիս նախօրոք պատրաստվել եղանակի փոփոխություններին: Տիեզերագնացները ուսումնասիրում են երկրաբանական գոյացումները և օգնում որոնել որոշ տեսակի օգտակար հանածոներ:

Թե ուրիշ ինչպիսի կիրառություններ կգտնի տիեզերագնացությունը հետագայում, առայժմ դժվար է կանխագուշակել, դրանց թիվը ժամանակի ընթացքում անընդհատ կաճի:

Աստղագիտության մեջ առաջին անգամ իսկական հեղաշրջում տեղի ունեցավ մոտ 360 տարի առաջ, երբ իտալացի մեծագույն մտածող Գալիլեո Գալիլեյը հայտնագործեց հեռադիտակը: Միայն խոշոր հեռադիտակներն էին, որ աստղագետներին թույլ տվեցին ավելի ու ավելի խորանալ դեպի Տիեզերքի ամենահեռավոր անկյունները, հայտնագործել բոլորովին նոր ու հետաքրքիր երկնային մարմիններ: Մարդկանց առջև անսահմանորեն բացվեց



մի զարմանալի ու հարուստ աշխարհ…

Հետագայում անգլիացի հանճարեղ գիտնական Իսահակ Նյուտոնը ցույց տվեց, որ արևի սովորական սպիտակ լույսն իրականում կազմված է տարբեր գույների ճառագայթներից: Այդ բանում ձեզանից յուրաքանչյուրը հեշտությամբ կարող է համոզվել՝ նայելով ապակե եռանկյուն պրիզմայի միջով: Անձրևի ժամանակ, կամ դրանից հետո, շատ հաճախ դիտվող «յոթգույնանի» ծիածանը նույնպես իրենից ներկայացնում է սպիտակ լույսի տարածում ջրի մանր կաթիլների մեջ:

Սակայն մանուշակագույնով սկսվող ու կարմիրով վերջացող այդ յոթ գույներն ամենևին էլ այն բոլոր ճառագայթները չեն, որ առաքում են աստղերն ու արևը: Իրականում դրանք բազմաթիվ էլեկտրամագնիսական ալիքների միայն շատ փոքր մասն են: Լույսը ռադիոալիքներից (առանց որոնց հնարավոր չէին լինի ո՛չ ռադիոկապը, ո՛չ էլ հեռուստատեսությունը), ռենտգենյան ճառագայթներից (որոնցից այդքան հաճախ օգտվում են բժշկության մեջ) և մյուս էլեկտրամագնիսական ալիքներից տարբերվում է միայն ու միմիայն ալիքի երկարությամբ: Լուսային ալիքները երկար են ռենտգենյան ճառագայթներից, բայց շատ ավելի կարճ են, քան ռադիոալիքները: Իսկ ինչո՞ւ ենք մենք տեսնում միայն հատկապես վերևում հիշված գույները: Բանից պարզվում է, որ Երկրի մթնոլորտը կլանում է մանուշակագույնից կարճ և կարմիրից երկար համարյա բոլոր ճառագայթները, և այդ պատճառով էլ մարդու աչքը հարմարվել է այդ գույներին:

Ուրեմն ի՞նչ է ստացվում: Մթնոլորտի գոյության պատճառով մենք կարողանում ենք ուսումնասիրել երկնային մարմինների առաքած էլեկտրամագնիսական ալիքների միայն մի փոքր մասը: Դա նույնն է, թե կարդաս սկզբի ու վերջի էջերը պատռված մի գիրք:

Այստեղ էր, որ աստղագետներին օգնելու եկավ տիեզերագնացությունը: Երբ 13 տարի առաջ՝ 1961 թվականի ապրիլի 12-ին, Յուրի Գագարինը «Վոստոկ 1» տիեզերանավով կատարեց պատմական շուրջերկրյա թռիչքը, քչերը կարող էին երևակայել, որ մի օր շուրջերկրյա ուղեծիր կհանվի նաև աստղադիտարան: Բայց տիեզերագնացությունը շատ կարճ ժամանակամիջոցում հասավ իսկապես աներևակայելի հաջողությունների: Գագարինի մեկուկես ժամանոց թռիչքին հաջորդեցին խմբական, շաբաթներ տևող թռիչքներ: Սովետական ավտոմատ կայանները, իսկ այնուհետև նաև ամերիկացի տիեզերագնացները, վայրէջք կատարեցին Լուսնի վրա: Երկիր հասցվեցին լուսնահողի նմուշներ: Միջմոլորակային կայաններ արձակվեցին դեպի Մարս ու Վեներա: Այդ բոլոր արշավներն ու փորձերն իրականացնելու համար պահանջվեց ընդամենը մի տասնամյակ՝ մարդկային պատմության մի փոքրիկ ժամանակահատվածը:

Իսկ 1971 թվականին, մարդկային առաջին տիեզերական թռիչքից տասը տարի անց, ՍՍՀՄ-ում իրագործվեց աշխարհում առաջին «Սալյուտ» ուղեծրային լաբորատորիայի կառուցումը: Շաբաթներ շարունակ Երկրի մակերևույթից հարյուրավոր կիլոմետր բարձրության վրա, մթնոլորտի մյուս կողմում, գիտափորձեր էին անում տիեզերագնացներ Վոլկովը, Դոբրովոլսկին և Պացաևը: Բժշկական, կենսաբանական, օդերևութաբանական աշխատանքներին զուգահեռ կատարվում էին նաև աստղաֆիզիկական դիտումներ:



Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Բոլորի հիշողության մեջ դեռ թարմ է անցյալ տարվա դեկտեմբերին արձակված «Սոյուզ—13» նավի թռիչքը: Այդ թռիչքի և տիեզերագնացներ Կլիմուկի ու Լեբեդևի աշխատանքի հիմնական նպատակը նույնպես աստղաֆիզիկական դիտումներն էին:

Մենք ավելի ու ավելի հաճախ ենք լսում տիեզերական նորանոր թռիչքների մասին: Նույնիսկ չենք էլ հասցնում զարմանալ մի ապշեցուցիչ թռիչքով, երբ դրան հաջորդում է մեկ ուրիշը՝ ավելի ֆանտաստիկ, ավելի անհավատալի: Տարբեր երկրներ համագործակցում են միմյանց հետ, որպեսզի ավելի մեծ արդյունքների հասնեն: Աշխարհի երկու ամենախոշորագույն տիեզերական տերությունները՝ ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը նախապատրաստվում են 1975 թվականին համատեղ ծրագիր իրականացնել «Սոյուզ» և «Ապոլոն» տիեզերանավերի օգնությամբ:

Միայն այսպես՝ տիեզերագնացության անընդհատ զարգացմամբ կարելի է ավելի շատ բան իմանալ աշխարհի մասին: Քանի որ Տիեզերքն անսահման է և այնքա՜ն հետաքրքիր բաներ ունի թաքցրած:

# Տիեզերագնացը

Վ. ԺԵԼԵԶՆԻԿՈՎ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽՈՐՈՍՅԱՆԻ

Նորեկը նստած էր վերջին նստարանին: Նրան չէր կարելի չնկատել: Նա վառ կարմիր մազեր ուներ:

— Նոր աշակերտ է եկել,— ասաց Լյովուշկինը:

— Որտեղի՞ց ես եկել,— հարցրի ես:

— Մեր տունը քանդել են ու մեզ նոր բնակարան տվել:

— Ազգանո՞ւնդ:

— Կնյաժին:

— Ֆիզիկայից ինչպե՞ս ես:

— Իմ սիրած առարկան է:

Այնուամենայնիվ նա խիստ կարմրամազ էր և ես ակամա նայում էի նրա մազերին ու դեմքը չէի տեսնում:

Սկսեցի նոր քանակներ բացատրել: Ամեն անգամ, երբ դեպի գրատախտակն էի շրջվում, որպեսզի բանաձև գրեմ կամ գծագրեմ, Լյովուշկինը իմ թիկունքում քչփչում էր ու ինչ-որ բանի վրա ծիծաղում:

— Մի՛ խանգարիր, թո՛ղ լսենք,— ականջիս հասավ նորեկի ձայնը:

Ես ետ նայեցի: Լյովուշկինը այնպիսի շփոթված տեսք ուներ, կարծես տաք թեյը բերանն էր առել, վառվել ու հիմա չգիտեր՝ կո՞ւլ տա, թե՞ դուրս թքի:

— Կնյա՛ժին,— ասացի ես,— մոտեցի՛ր գրատախտակին և նոր բանաձևով վճռի՛ր այս խնդիրը:

Նա արագ լուծեց խնդիրը և հստակ, առանց վարանելու, բացատրեց բոլորը: Ինձ դուր եկավ նրա պատասխանը: Աշակերտները սովորաբար շատ ավելորդ բառեր են ասում, իսկ Կնյաժինը չասաց:

Զանգից հետո երբ ես դուրս էի գալիս դասարանից, լսեցի Լյովուշկինի ձայնը.

— Մի սրա՞ն տեսեք: Ես իրեն խանգարո՞ւմ եմ: Մի օր չկա գալը և արդեն իր կարգ ու կանոնն է հաստատում: Ակադեմիկ Ֆո՞կն ես, ի՞նչ է: Սա մեզ չի թողնի շարժվենք: Կարմրամազ է, քիչ է, ստորաքարշ էլ է:

— Ինքս էլ գիտեմ, որ կարմրամազ եմ,— հանգիստ պատասխանեց Կնյաժինը,— իսկ դու հիմար ես, որ դրա համար ինձ ծաղրում ես: Եվ դա հաստատ այդպես է:

Մի շաբաթ անց ավագ ջոկատավարի մոտ տեսա զանազան խմբակների անդամագրված երեխաների ցուցակները: Ֆիզիկայի խմբակում առաջինը Կնյաժինն էր գրված: «Այդ լավ է,— մտածեցի ես,— տղան, ա՛յ, Կնյաժինի նման պետք է լինի»:

Աչքի անցկացրի մյուս խմբակների ցուցակները և ամեն տեղ հանդիպեցի Կնյաժինի ազգանվանը: Ե՛վ բնագիտական խմբակում, և՛ մաթեմատիկայի, և՛ սպորտայինի: Միայն երգեցողության խմբակում չէր գրվել:

Դասամիջոցին կանչեցի մոտս:

— Ինչո՞ւ ես բոլոր խմբակներում գրվել,— հարցրի ես,— իմ կարծիքով, դա անլրջություն է քո կողմից:

— Ինձ պետք է,— պատասխանեց նա:

— Դու երևի չգիտես, թե որ առարկան ես նախընտրում:

— Ո՛չ, գիտեմ,— պնդեց նա:— Բայց ինձ այդ բոլորը պետք են: Իսկ թե ինչո՞ւ, դա իմ գաղտնիքն է:

— Գաղտնիքդ քե՛զ պահիր,— ասացի ես,— բայց ֆիզիկայի խմբակի պարապմունքներին կարող ես չգալ: Եթե դու մասնակցում ես և՛ բնագիտության, և՛ մաթեմատիկայի, և՛ սպորտի խմբակներին, ֆիզիկայի համար այլևս ժամանակ չի մնա:

Կնյաժինը սաստիկ հուզվեց, հուզմունքից գունատվեց: Ես զղջացի, որ այդքան խիստ խոսեցի հետը, այնուամենայնիվ նա դեռ երեխա էր:



— Ես ամեն բան պետք է գիտենամ,— ասաց նա:— Ես տիեզերանավի օդաչու եմ դառնալու: Դեռ ոչ ոքի ես այդ չէի ասել, դուք ինձ ստիպեցիք ասել:

— Հա-ա՜,— ծոր տվի ես: Եվ առաջին անգամ ուղիղ նայեցի նրա դեմքին: Կարմրավուն մազափնջի տակից երևում էր նրա ուռուցիկ ճակատը, իսկ աչքերը կապույտ էին ու համարձակ:

«Սա կթռչի,— մտածեցի ես,— ու տեղ կհասնի»: Հիշեցի, թե ինչպես եմ պատերազմի ժամանակ թռել պարաշյուտով և ի՜նչ սարսափելի էր դատարկության մեջ թռչելը: Նայում ես հեռավոր երկրին, փոքրիկ մամռափնջերի նման ծառերին, անձրևառվակներ հիշեցնող գետերին և, անկախ նրանից ուզում ես դու այդ թե ոչ, մտածում ես՝ հանկարծ ու պարաշյուտը չբացվի: «Իսկ չէ՞ որ տիեզերք թռչելն ավելի սարսափելի է: Բայց սա, միևնույն է, կթռչի»:

— Եթե այդպես է, ես չեմ առարկում,— ասացի ես:

— Շնորհակալություն,— պատասխանեց Կնյաժինը:

Երեք ամսվա ընթացքում նա ֆիզիկայի խմբակի ոչ մի պարապմունք բաց չթողեց: Իսկ հետո հանկարծ դադարեց հաճախել: Դասերին էլ նա մի տեսակ ցրված էր, նույնիսկ սկսեց նիհարել:

— Կնյա՛ժին,— հարցրի ես,— ինչո՞ւ էլ չես գալիս խմբակի պարապմունքներին: Չե՞ս հասցնում:

Նա հայացքը հառեց ինձ: Դա ուրիշ մարդու աչքեր էին: Թախծոտ էին և կորցրել էին իրենց կապույտ գույնը:

— Կգա՛մ,— պատասխանեց նա:

Լյովուշկինը մտերմացել էր Կնյաժինի հետ և ասաց ինձ.

— Նրան մեծ անախորժություն է պատահել: Պատմել չեմ կարող, բայց մեծ անախորժություն է:

Որոշեցի մոտ օրերս խոսել Կնյաժինի հետ, բայց դիպվածը մեզ հանդիպեցրեց հենց այդ երեկո: Ես կանգնած էի գրախանութում, վաճառասեղանի մոտ ,և հանկարծ ետևից լսեցի ծանոթ մի ձայն.

— Նոր բան կա՞:

— Էլի՛ր, տղա՛,— պատասխանեց վաճառողուհին,— ամեն օր չի կարող նոր բան լինել: Գոնե շաբաթը մեկ-երկու անգամ արի:

Ետ նայեցի: Իմ առջև Կնյաժինն էր կանգնած, բայց նրա դեմքի արտահայտության մեջ ինչ-որ մի անծանոթ բան կար: Ես իսկույն գլխի չընկա, հետո հասկացա՝ նրա քթին ակնոց էր տնկված: Փոքրիկ, մանկական ակնոց, սպիտակ մետաղյա շրջանակով:

Մի րոպե մենք լուռ կանգնած էինք: Կնյաժինը կաս-կարմիր էր կտրել: Կարմրել էին նրա այտերը, ականջները, նույնիսկ քիթը:

Էլ ոչինչ չհասցրի ասել. նա տեղից պոկվեց ու փախավ:

— Ա-ա՜, Կնյա՜ժին,— ասացի ես:

Ես վազեցի նրա ետևից:

— Կնյա՜ժին,— կանչեցի ես,— Կնյա՜ժին, կանգնի՛ր:

Մի տղամարդ նայեց ինձ, իսկ մի կին գոռաց.

— Բռնեցե՛ք տղային:

Այն ժամանակ Կնյաժինը կանգ առավ: Նա ինձ չէր նայում, հանել էր ակնոցը և գլուխը խոնարհել:

— Եվ դու չե՞ս ամաչում: Քի՞չ մարդ է ակնոց կրում ու բոլորովին էլ չի ամաչում դրանից: Ների՛ր, իհարկե, բայց դա հիմարություն է:

Նա ոչինչ չպատասխանեց:

— Փախչե՞լ այդ հիմար բանի համար: Իսկ Լյովուշկինն ասում էր՝ Կնյաժինին մեծ անախորժություն է պատահել: Հիմարությո՜ւն:

Նա բարձրացրեց գլուխն ու կամացուկ ասաց.

— Ես չեմ կարող օդաչու դառնալ, ես իմացել եմ, կարճատեսներին չեն ընդունում: Տիեզերանավեր չեմ կարող վարել: Ես ատում եմ այս ակնոցը:



Ահա թե ի՜նչ: Ահա թե ինչու է նա այդպես դժբախտ ու նիհարած: Փշրվել էր երազը, և նա տառապում էր:

— Իզուր ես քեզ տանջում,— ասացի ես վերջապես:— Դու տիեզերանավով կթռչես որպես աստղաբաշխ, ճարտարագետ կամ բժիշկ:

— Ուրեմն... դուք կարծում եք, որ ես այնուամենայնիվ կարո՞ղ եմ հույս ունենալ... Կարո՞ղ եմ:— Նա ուրախացած կառչեց իմ խոսքերից: Նա այնքա՜ն երջանիկ էր: Ես մտածեցի. «Ի՜նչ լավ է, երբ մարդը որոշակի նպատակ ունի և ամեն ինչ դեռ առջևում է»:

*Թարգմ. ԼԻԼԻ ՏԵՐ-ՄԻՆԱՍՅԱՆԻ*



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



# ԲԱՐԵԿԱՄԻ ՍԻՐՏԸ

ԴԱՎԻԹ ՈՍԿԵՐՉՅԱՆ



Անվախ որսորդ էր Լուսյենը: Նա բարձրահասակ էր, հաղթանդամ ու գեղեցիկ: Նրա անվեհերությունը և ազնվությունը հայտնի էր բոլորին, բոլորը գիտեին, որ քաջ Լուսյենը իր քաջությունը գործ է ածում միայն բարի նպատակների համար:

Լուսյենը իր տունը կառուցել էր այնտեղ, ուր վերջանում էր անտառը: Անտառի իր փոքրիկ տնակում ապրում էր նա իր մոր հետ: Նրանց ապրուստի միջոցը Լուսյենի սպանած գիշատիչ կենդանիների մորթիներն էին: Այսպես ապրում էր Լուսյենը՝ չմտածելով վաղվա մասին: Եվ իրոք, թող վախկոտները մտածեն վաղվա մասին: Իսկ Լուսյենը քաջ է, պատրաստ դիմավորելու նոր օրվան ու նրա բերած դժվարություններին:

Մի անգամ Լուսյենը անտառում տեսավ մի վիրավոր առյուծիկի: Նրան վիրավորել էր նենգ որսորդի նետը: Առյուծիկը մռնչում էր ցավից, գալարվում ու վազում, որ գտնի իր սիրեցյալ մորը: Բայց արդեն արյունաքամ էր լինում, այլևս վազելու ուժ չուներ: Եվ ընկավ մի դարավոր կաղնու տակ՝ աչքերը փակեց: Հենց այդ վիճակում էլ նրան գտավ Լուսյենը: Նա առյուծիկին առավ իր ուսերին և բերեց տուն: Մայրը շատ զարմացավ ու անհանգստացավ: Բայց հետո հանգստացավ, իմանալով, որ իր որդին ինչպես միշտ՝ այս անգամ էլ բարի գործ է կատարել: Եվ այսպես առյուծի ձագը մնաց նրանց տանը: Ընտելացավ այդ աղքատիկ հարկի ներքո ապրող մարդկանց, կապվեց նրանց և ուզեց հավերժ մնալ այստեղ, մի բան, որն անհնարին էր: Անցավ ինչ-որ ժամանակ, և Վալյուրը, այսպես էին կոչում առյուծիկին, ապաքինվեց: Ու հասավ այն օրը, երբ նա պետք է հեռանար: Նա դանդաղ քայլերով դուրս եկավ տանից և ուղևորվեց լայնարձակ ու թավուտ անտառը: Հեռանալիս վերջին անգամ թախծոտ հայացք գցեց Լուսյենի և նրա մոր կողմը, որոնք արցունքների միջից աշխատում էին ժպտալ...

Անցան տարիներ: Մոտակայքում, որտեղ ապրում էր Լուսյենը, իրենց նորակառույց դղյակն էր եկել կայսերական ընտանիքը: Եվ նրանց մեջ էր չքնաղ Վերգիլյան, որի կյանքը մի օր որսի ժամանակ փրկեց քաջ որսորդ Լուսյենը... Նրանք տեսան, սիրեցին իրար: Կայսրն իմացավ նրանց սիրո մասին և բարկացավ ու որոշեց պատժել հանդուգն որսորդին: Նրա հրամանով Լուսյենը զնդան նետվեց և դատապարտվեց մահվան: Ու զվարճության համար նրան տարան մենամարտելու առյուծի հետ:

Եվ ահա թնդում են շեփորները, որոնք ազդարարում են հռոմեացիներին մարդու և առյուծի սպասվող մենամարտի մասին: Հռոմը այդ օրը ասես շուտ էր արթնացել քնից: Բոլորը շտապում էին կրկես: Նրանք ուզում էին տեսնել հանդուգն որսորդին: Եվ երբ Լուսյենը դուրս եկավ հրապարակ, շատերը ապշեցին, մի՞թե այսքան երիտասարդ էր հռչակավոր որսորդ Լուսյենը, որի փառքը թնդում էր ողջ Իտալիայում:

Լուսյենը լուռ սպասում էր իր ախոյանին: Նա ուշանում էր: Եվ հանկարծ որսորդի հայացքը կանգ առավ ոսկեզօծ օթյակի վրա, որտեղ բազմել էր ին-

քը՝ Հռոմի տիրակալը: Այդ պահին Լուսյենին պատեց անբացատրելի մի զգացում. ինքնամոռացման մեջ, դիմելով կայսրին, նա բացականչեց բոլորին լսելի ձայնով.

— Կա՛յսր, լսո՞ւմ եք, եթե ես հաղթեմ առյուծին՝ կտա՞ք ինձ ազատություն... Ազատությո՛ւն...

Դրանք սովորական խոսքեր չէին, որ թռան նրա շուրթերից, այլ՝ հոգու աղաղակ...

— Եթե հաղթե՛ս,— քմծիծաղեց կայսրը:

Վերջապես բացվեց երկաթյա ճաղերով վանդակը ու կատաղի առյուծը դուրս թռավ, որին ավելի գազազեցնելու համար արդեն երկու օր էր ոչինչ չէին տվել ուտելու: Այո՛, Լուսյենն իր կյանքում այդպիսի մեծ ու վիթխարի առյուծի չէր հանդիպել: Նրա առջև կանգնած էր մի ամեհի գիշատիչ, որն ամեն րոպե պատրաստ էր պատառ-պատառ անել նրա կիսամերկ մարմինը: Բայց, ինչպես վայել է քաջին, Լուսյենը մի քայլ անգամ չնահանջեց, նա մի պահ տեսավ չքնաղ Վերգիլյային, որը հիացած նայում էր իրեն: Նրա ուժերը կրկնապատկվեցին, և Լուսյենը ճարպկորեն ցատկեց ու փորձեց սուրը մխրճել առյուծի սիրտը... բայց կարողացավ միայն վիրավորել նրան: Վերքը խորը չէր, և բոլորը շունչները պահած սպասում էին տեսնելու, թե ինչ է լինելու: Չէ՞ որ նրանք երկուսն էլ մենամարտում էին ազատության և կյանքի համար: Եվ առյուծը, ամեհի երախը բաց, ահեղ մռնչյունով նետվեց որսորդի վրա ու գետին տապալեց նրան... Մեռնում էր Լուսյենը, ուժերը հետզհետե լքում էին նրան, նա զգում էր մոտեցող մահվան շունչը և փակեց աչքերը: Ուր որ է, առյուծը ժանիքները կմըխրճի նրա կուրծքը: Որսորդը մի անգամ ևս բացեց աչքերը՝ տեսնելու հաղթողին: Լուսյենի աչքերն ու դեմքը, որ ցավից կծկվել էին, առյուծին ինչ-որ հարազատ ու մտերիմ բան հիշեցրին, և նրա մահաբեր թաթը օդում մնաց կախված: Վալյուրը ճանաչեց Լուսյենին. .

Փոթորկվում էր Հռոմը, պատրիկ թե պլեբեյ իջեցրել են իրենց բութ մատները: Հղփացած ամբոխը կարծում էր առյուծն իր որոշմանն է սպասում: Հանկարծ զարմանք պատեց ամենքին... Առյուծն իր հաղթական թաթը փոխարեն իջեցնելու պարտվողի կրծքին, սկսեց լիզել նրա տաք վերքերը: Վայրենի ամբոխի քարացած հայացքի տակ՝ Վալյուրը վերքը լիզում ու արտասվում էր: Արցունքները հոսում էին նրա աչքերից, որոնք անքթիթ նայում էին Լուսյենին: Վալյուրը սկսեց մռնչալ, նա օգնություն էր խնդրում, պտտվում էր Լուսյենի շուրջը, աղերսական կանչեր արձակում: Տեսնելով, որ այլևս չկա փրկության հույս, նա փաթաթվեց Լուսյենին... Վա՛յ այն հռոմեացի զինվորին, ով կհամարձակվեր մոտենալ իր վիրավոր բարեկամին: Նրա տաք ու խոշոր արցունքները թափվում էին Լուսյենի դեմքին: Վերջապես Լուսյենը բացեց աչքերը, նայեց, ասես դարավոր քնից էր արթնանում... Նա նույնպես ճանաչեց Վալյուրին:

Հռոմը, որ վաղուց դադարել էր զարմանալ, կարկամել էր հուզմունքից: Իսկ քիչ անց պոպուլյարների կողմից մի բացականչություն լսվեց. «Ազատի՛ր դու նրանց, կա՛յսր»: Հետզհետե ամբողջ ասպարեզը թընդաց՝ «Ազատությո՛ւն նրանց... Նրանք արժանի են ազատությա՜ն»,— լսվում էին կրկեսի տարբեր կողմերից:

Զարմանքն ու տարակուսանքը պատել էր նաև կայսերական օթյակին: Կայսրի հարազատները նույնպես պահանջում էին ազատ արձակել մարտիկներին: Եվ նրանց բացականչությունների մեջ լսելի էր չքնաղ Վերգիլյայի արցունքախառն ձայնը: Կայսրը ստիպված եղավ զիջել և, ամբոխի վայրի աղաղակների տակ, բարձրացրեց աջ ձեռքը, որը նշանակում էր՝ տալիս է պահանջվող ազատությունը:



# ՍԱՐԻՑ ԻՋՆՈՂ ԱՌՈՒՆ

ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ

Ձյունը հալվեց անձայն
Գարնան տաքուկ շնչից
Ու խենթ առու դարձած՝
Իջավ լեռան լանջից:
Դիպավ հազար քարի,
Հազար խութեր անցավ.
Դրանից էլ սարի
Առուն պղտոր դարձավ:
Ջերմ ողջույններ տալով
Հավքերին ու հովին՝
Առուն երգով ծանոթ
Հասավ կանաչ հովիտ:
Այստեղ ծիլ ու ծաղիկ
Տեսավ առուն մեր պաղ,
Գառնուկների խաղից
Սիրտը խայտաց ուրախ:
Հանգստացավ քիչ-քիչ,
Ապա զուլալ ժպտաց,
Հայացքի մեջ իր ջինջ
Մի ափ երկինք պահած:
Հետո պատմեց առուն
Ում որ ճամփին տեսավ
Թե ինչ սարից հեռու
Ինչ՝ այստեղ հասավ:

# ՄՈՌԱՑՎԱԾ ԱՇԽԱՐՀԻ ԶԱՐՄԱՆԱՀՐԱՇ ԲՈՒՅՍԵՐԸ

*ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*



*Նախապատմական գիգանտ ծառ՝ լեպիդոդենդրոն*

Երկրագնդի վրա շատ կան մեկուսացված վայրեր, կղզիներ, որտեղ հարյուր հազարավոր և նույնիսկ միլիոնավոր տարիների ընթացքում կյանքը ընթացել է մայր ցամաքներից անջատ, յուրովի: Այդ մեկուսացած վայրերում ապրում են այնպիսի բույսեր ու կենդանիներ, որոնք վաղուց անհետացել են մայր ցամաքներում՝ գոյության կռվում իրենց տեղը զիջելով ավելի կատարելագործված օրգանիզմներին:

Այդպիսի խոշորագույն օջախ է Ավստրալիական մայր ցամաքը: Մի ժամանակ երկրագնդի վրա լայնորեն տարածված պարկավոր կենդանիները (կենգուրու, գայլ) պահպանվել են միայն Ավստրալիայում: Դեռ ավելին, այստեղ պահպանվել են նաև մի շարք կենդանի բրածոներ, որոնք չափազանց մեծ հետաքրքրություն են ներկայացնում գիտության համար: Հարյուր միլիոնավոր տարիների ընթացքում կյանքը կանաչ մայր ցամաքում ընթացել է արտաքին աշխարհից մեկուսացած, և այդ պատճառով էլ բուսաբաններն ու կենդանաբանները այստեղ չափազանց հարուստ նյութ են գտնում իրենց հնէաբանական ուսումնասիրությունների ընթացքում:

Երկրագնդի մեկուսացած ու չափազանց հետաքրքիր օջախներից է նաև Սուրբ Հեղինե կղզին, որը մոտակա՝ աֆրիկական մայր ցամաքից անջատված է 1500 կիլոմետր լայնությամբ ջրային պատնեշով: Միլիոնավոր տարիներ շարունակ կղզին ապրել է իր յուրովի կյանքով, հեռու մնալով քաղաքակրթությունից և բնության գործերին մարդու հարկի ու անհարկի միջամտություններից:

Երկրագնդի վրա կյանքը ընթացել է խիստ հետաքրքիր օրինաչափությամբ: Սկզբում մայր ցամաքները ծածկված են եղել գիգանտ խոտերով, ծառախոտերով ու պտերանմաններով: Հետագայում դրանք փոխարինվել են խոշոր ծառերով: Մոտավորապես 350 միլիոն տարի առաջ երկրագնդի վրա իշխել են պրիմիտիվ մերկասերմերից մեկի՝ գինկգոյի լայնածավալ անտառները: Հետագայում հանդես են եկել նորանոր հսկա ծառատեսակներ, ինչպես մերկասերմերի, այնպես էլ ծածկասերմերի դասից: Սակայն էվոլյուցիոն պրոցեսը հետագայում ընթացել է այլ ուղիով: Սկսել են առաջանալ խոտաբույսեր, որոնք կյանքի պայմաններին ավելի լավ հարմարվելով, աստիճանաբար դուրս են մղել խոշոր ծառատեսակներին: Մի շարք ծառեր, որոնք մի ժամանակ տարածված էին երկրագնդի վրա, վերափոխվել են խոտաբույսերի:

Չեզ բոլորիդ քաջ ծանոթ է սովորական մարգարտածաղիկը: Հազիվ մի թզաչափ բարձրություն ունեցող բույս է, որի վարդակը ճմեռելով ձյան տակ, գարնանը առատորեն ծաղկում է առանց ընդմիջումների՝ մինչև աշուն: Ձեր մտքով կարո՞ղ է անցնել, որ այդ համեստ ծաղկաբույսերը մի ժամանակ խոշոր ծառեր են եղել: Բայց դա իրոք այդպես է, միայն թե մարգարտածաղկի ծառանման նախնիները վաղուց են անհետացել երկրագնդի երեսից:

Երբ սրանից 400 տարի առաջ եվրոպացիները հայտնաբերեցին Սուրբ Հեղինե կղզին, նրանք ապշել էին կղզու հարուստ ու ֆանտաստիկ բուսականությամբ: Դա մի հնագույն թանգարան էր, որտեղ հնէաբան բուսաբանները կարող էին կենդանի վիճակում ուսումնասիրել միլիոնավոր տարիներ առաջ անհետացած բուսական նմուշները: Բուսաբան Ջոն Հարչինսոնը Սուրբ Հեղինե կղզին անվանել է «կործանված հին աշխարհի բեկոր»:

Երկար ժամանակ բուսաբանները ուսումնասիրում էին կղ-



*Սև կաղամբածառ*

զու զարմանահրաշ բույսերը: Որքա՞ն գաղտնիքներ բացահայտվեցին: Սակայն... հանկարծ այդ հարուստ ու առեղծվածային բուսականությունը համարյա իսպառ վերացավ անհավատալիորեն կարճ ժամանակամիջոցում:

1513 թվականին պորտուգալացիները Սուրբ Հեղինե տեղափոխեցին մի քանի գլուխ այծ: Ընդամենը մի քանի տարվա ընթացքում արագորեն բազմանալով, այդ ագահ ու ամենակեր կենդանիները սկսեցին ոչնչացնել կղզու հարուստ բուսականությունը: 1588 թվականին այծերի գլխաքանակը կղզում արդեն հասել էր տասնյակ հազարների: Ճիշտ է ասված, որ այծերից հետո սովորաբար ոչինչ չի մնում: Երբ դրանք ուտում են ամբողջ բուսականությունը, անխուսափելիորեն իրենք էլ են ոչնչանում սովից: Երբ արդեն կղզու բուսականությունը համարյա լրիվ ոչընչացել էր, 1709 թվին նահանգապետը կղզու սաթի արժեքավոր անտառները փրկելու նպատակով որոշեց ոչնչացնել աղետաբեր այծերին: Սակայն Իսպանիայի կառավարությունը պատասխանեց, որ այծերն ավելի արժեքավոր են, քան սաթի անտառները: 1809 թվականին արդեն կղզու բուսականությունը համարյա լրիվ ոչնչացել էր և փոխարինվել դրսից բերված օտար բույսերով: Բուսածածկոցից զրկված հողը արագորեն էրոզիայի ենթարկվեց, և կղզին սկըսեց լրիվ ամայանալ: Դրան մեծ չափով օժանդակում էին արևադարձային հորդահոս անձրևները: Հետագայում մեծ դժվարությամբ միայն հնարավոր եղավ ոչնչացնել այծերին և կղզին փրկել լրիվ ամայացումից:

Այնուամենայնիվ կղզու որոշ, նույնիսկ այծերի համար անմատչելի անկյուններում, պահպանվեցին երբեմնի հարուստ ու ֆանտաստիկ բուսականության որոշ ներկայացուցիչներ:

Բարեբախտաբար պահպանվել է նաև մարգարտածաղկի զարմանահրաշ ծառը, որին անվանում են նաև կաղամբածառ, քանի որ տերևները շերտ առ շերտ նստած են մեկը մյուսի վրա, ճիշտ այնպես, ինչպես կաղամբի տերևները: Հատկապես շատ են տարածված «սև կաղամբածառը» (մելոնոդենդրոն ինտեգրիֆոլիում), «արական կաղամբածառը» (սենեցիո լեյկոդենդրոն), «սպիտակաբուն կաղամբածառը» (պետրոբիում արբորեում) և հեդիտիսը (հեդիտիս արբորեա):

Ծառանման մարգարտածաղիկներից մեծ հետաքրքրություն է ներկայացնում համվուդը (կոմմիդենդրոն ռոբուստրում): Կղզում պահպանվում են այն հնագույն ծառերը, որոնք աճում են Լոնգվուդի տան պարտեզում: Դա այն տունն է, որտեղ Նապոլեոն Բոնապարտը անց է կացրել իր կյանքի վերջին վեց տարիները:


Սպիտակաբուն կաղամբածառ


Հին համվուդները Լոնգվուդում

# ԳԵՂԵՑԻԿ ԱՎԱՆԴՈՒՅԹՆԵՐԸ ՊԱՀՊԱՆՎՈՒՄ ԵՆ

*Պապիկների հավաքատեղին բանուկ մայրուղու եզրի միակ նստարանի կամ էլ հակառակ կողմի աղբյուր-հուշարձանի շուրջըն էր: Քանի որ վաղ գարուն էր, նրանք գրեթե անելիք չունեին: Զրուցում էին ու աչքի պոչով հետևում դպրոցամերձ հողամասում աշխատող աշակերտներին: Ուրախանում էին իրենց թոռնիկների աշխատանքով, բայց նաև անօգուտ էին համարում այն, որովհետև այդ ավազաքարերի, աղուտների մեջ դարերով ոչինչ չէր աճել, ալլապես իրենց պապերը, որ մի թիզ հողի համար արյուն էին թափում, անպայման կմըշակեին:*

*Սակայն Արտաշատի շրջանի Ազատավան գյուղի միջնակարգ դպրոցի դիրեկտորը և աշակերտները այդպես չէին մտածում: Նրանք շարունակեցին քար ու ավազից, շինարարական մնացուկներից մաքրել նորակառույց դպրոցից մինչև մայրուղի ընկած հողատարածությունը, որն հետո պետք է դպրոցամերձ այգի դառնար:*

*Արդեն յոթ տարի է անցել այդ օրից: Հիմա առաջին տնկիները բարձրուղեշ ծառեր են դարձել, շրջափակել դպրոցն ու մարզական խաղահրապարակները, իսկ առվույտի դաշտն ու խաղողի այգին այնքան եկամուտ են տալիս, որ հնարավոր է լինում դըպրոցի կարիքները հոգալուց զատ, նաև էքսկուրսիաներ կազմակերպել դեպի հանրապետության ու Սովետական Միության շատ քաղաքներ: Մեկնում են տարվա տարբեր եղանակներին, մեկնում են իրենց դպրոցական ընկերների հետ, իսկ վերադառնում՝ այցելած վայրերում նոր ընկերներ ու ծանոթներ թողած:*

# ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ



Այս ամենի հետ դպրոցում բարձր է կարգապահությունն ու առաջադիմությունը: Դասամիջոցներին այստեղ հանդարտ զրուցում են իրար հետ, շրջում միջանցքում, ոչ ոք կոկորդով մեկ չի գոռում, չեն հրմշտում ու չեն հետապնդում իրար:

Արդեն վեցերորդ տարին է, որ դպրոցը չի վերանորոգվել, ավելի ճիշտ՝ դրա կարիքը չի եղել: Երբեմն շաբաթներով հավաքարար էլ չեն ունենում: Կոլտնտեսությունը բերքահավաքի, այգեկութի ու այգեթաղի ժամանակ աշխատող ձեռքի մեծ կարիք է ունենում: Հավաքարարները գնում են կոլտնտեսությանը օգնելու, իսկ նրանց գործն անում են աշակերտներն իրենք:

Մտեք որ դասարանն ուզում եք: Ամենուր նստարաններն ու աթոռները խնամքով մաքրած, հատակը փայլեցրած է:

Ազատավանի միջնակարգ դպրոցի սաները լավ ցուցանիշներ ունեն նաև սպորտում: Վոլեյբոլի, բասկետբոլի, ֆուտբոլի, շաշկու, շախմատի և այլ խմբակները շրջանային մրցումներում շարունակաբար մրցանակային տեղեր են գրավում, իսկ աշակերտներից շատերը արդեն կարգային մարզիկներ են:

Այս ամենը դպրոցում մեկընդմիշտ արդեն հաստատված ավանդույթ են դարձել, որ հաջորդաբար փոխանցվում են նոր ընդունվողներին:

ՎԱՀԱՆ ՄԽԻԱԿՅԱՆ

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ՈՒ ԲԱԶՄԱԲՈՎԱՆԴԱԿ ԱՌՕՐՅԱ



Երկու ամսվա ավագ ջոկատավար էր № 81 դպրոցում, երեխաները տարբեր առիթներով հարցնում էին.

— Գնալո՞ւ եք մեր դպրոցից:

Նա մտածեց, որ երևի ինքը լավ չի կազմակերպում աշխատանքը և ավագ ջոկատավար լինելն իր ուժերից վեր է, դրա համար են այդ հարցը տալիս: Հետո իմացավ, որ նախորդ բոլոր ջոկատավարները երկու-երեք ամսից ավել չեն մնացել, որովհետև աշակերտները չար էին ու անտարբեր պիոներական աշխատանքների նկատմամբ:

— Հավաքները, ժողովները միօրինակ ու անհետաքրքիր էին կազմակերպվում, դրա համար էլ շատերը չէին ուզում մասնակցել: Իսկ ընկեր Գեղեցիկը մեր աշխատանքներն աշխույժ դարձրեց,— ասում է դպրոցի ԼԿԵՄ կազմակերպության քարտուղար Նազիկ Գրիգորյանը,— կազմակերպում է տարբեր թեմաներով բանավեճեր, աշակերտների ուժերով համերգներ: Դա է պատճառը, որ հիմա աշակերտները հետզհետե ավելի մեծ սիրով են մասնակցում բոլոր միջոցառումներին:

Յուրաքանչյուր հերթափոխից առաջ կամ հետո Գեղեցիկը պարապում է ետ մնացողների հետ, և գնալով վատ սովորողների թիվը նվազում է:

Խ-ն հաճախակի բացակայում էր դասերից և բնականաբար լավ չէր սովորում: Ընկեր Գեղեցիկը սկսեց զանազան հանձնարարություններ տալ նրան, խնդրում էր սեղան, աթոռ կամ այլ իր տեղափոխել պիոներսենյակ: Հետո երբ իմացավ, որ նա լավ ձեռագիր ունի, օգտվեց նաև այդ առիթից: Մի օր խնդրեց պատի թերթը գրել, մեկ ուրիշ անգամ՝ պաստառ ձևավորել:

Այդպես, միասին աշխատելով, ընկերական լավ հարաբերություններ ստեղծվեցին նրանց միջև: Դրանից հետո արդեն հնարավոր էր ուսման շուրջն էլ զրուցել, խորհուրդներ տալ: Խ-ն սկսեց քառորդից առաջադիմել, իսկ տարեվերջին հարվածային աշակերտ դարձավ: Այժմ նա գեղարվեստական ուսումնարանում է սովորում և կարիք ունենալիս նորից իր բարի խորհրդատու ավագ ջոկատավարի օգնությանն է դիմում:

«Աստղիկ» ակումբը № 69 մանկապարտեզի շեֆությունն է վերցրել: Պիոներները մանկապարտեզի նախադպրոցական խմբի հետ պարապմունքներ են անցկացնում, խաղալիքներ պատրաստում նրանց համար, զվարճալի խաղեր կազմակերպում, աթոռներ ու սեղաններ վերանորոգում: Անցյալ տարի ակումբի անդամները Գեղեցիկ Բաբաջանյանի հետ մեկ ամիս անընդհատ կարգավորում ու կանաչապատում էին մանկապարտեզի շրջապատը: Պիոներները շատ խնամքով կատարեցին այդ աշխատանքը, որի համար էլ մանկապարտեզի վարիչը գրավոր շնորհակալություն հայտնեց բոլորին:

Ահա նման բազմապիսի աշխատանքներով Գեղեցիկ Բաբաջանյանը աշխույժ ու բովանդակալից է դարձնում դրուժինայի առօրյան:

Է. ՄԱԼԽԱՍՅԱՆ



## ԴԵԼՖԻ՞ՆԸ ՄԱՐԴՈՒ ՎԱՂԵՄԻ ԲԱՐԵԿԱՄ՞Ն Է

Վերջերս գիտնականները շատ են հետաքրքրվում դելֆիններով: Նրանց հետազոտությունները ու ուսումնասիրությունները խոսում են այդ ծովային կաթնասունների անսովոր խելքի և մարդկանց նկատմամբ ունեցած բարյացակամության մասին:

Դեռևս հին հունական պատմիչ Հերոդոտոսն է նկարագրել, թե ինչպես դելֆինը փրկել է մարդուն: Ահա այդ պատմությունը:

Երգիչ Օրիոնը, որն ապրել է Հունաստանում 4-րդ դարում մ. թ. ա., այնքան գեղեցիկ ձայն ուներ, որ գերում, հիացնում էր ունկնդիրներին: Մի անգամ Օրիոնը իր հայրենիքից մեկնեց Սիցիլիա՝ երգիչների մրցության: Ամենաբարձր պարգևներին ու ամենաթանկագին նվերներին արժանացած, երգիչը բռնեց տունդարձի ճամփան: Նավի թիավարների ագահությունը գերազանցեց երգչի փառքի ու տաղանդի նկատմամբ ունեցած հիացմունքին: Նրանք որոշեցին սպանել Օրիոնին և թալանել նրա ստացած նվերները ու պարգևները: Երգչին առաջարկեցին ինքնասպան լինել, այլապես իրենք կսպանեն նրան:

Օրիոնը տեսավ, որ խնդրանքները չեն օգնում, ասաց.

# ԱՅԳԻՆ ՊԱՇՏՊԱՆՈՒՄ ԵՆ... ՄՈԼԱԽՈՏԵՐԸ

Գ. ԲԱԼԴԻՆ



ի անգամ ամռանը իմ այգին եկավ իմ ծանոթ այգեպանը: Ես մոլախոտերն էի քրում՝ օշինդր, մեղվամուշկ, հազարտերևուկ, դեղատնային երիցուկ, եղինջ, շնալեզու: Ծանոթս տարակուսանքով նայեց ինձ, ապա ծիծաղելով հարցրեց.

— Լավ այգեպանները մոլախոտերը դուրս են շպրտում, իսկ քեզ մոտ դրանք հարգի են ծաղկի պես, այս ի՞նչ բան է:

— Ծաղկից էլ հարգի են,— պատասխանեցի նրան:

Նա սկսեց ուշադիր դիտել մոլախոտերին հատկացված անկյունը, ապա մեքենայորեն հայացքը նետեց խնձորենիներին, որոնց ճյուղերը կռացել էին կարմրաթուշ պտուղների ծանրությունից:

— Իսկ իմ խնձորները վաղուց թափվել են,— ցավով նետեց նա:— Ճիճուները եղած-չեղածն ամբողջովին կերան: Հաղարջ էլ չմնաց:

Նա ուզեց իմանալ, թե վնասատուների դեմ ինչ թունաքիմիկատներ եմ կիրառում, և զարմանք կըտրեց, երբ իմացավ, որ թույներն իմ այգում տեղ չունեն: Դրանց փոխարինում են թռչունները, օգտակար միջատները և... մոլախոտերը:

Երաշտահավերը, ճնճղուկները և սողահավերը այգում են ամառնամեն: Աշնանը նրանք սնվում են կանեփի սերմերով, որ ցանում եմ ծառերից մի քանիսի տակ, իսկ ձմռանը անուշ են անում արևածաղկի, դդմիկի և դդումի սերմերը: Արևածաղիկը ցանում եմ այգու եզրերին, իսկ դդմիկն ու դդումը՝ մեկ-երկու թուփ յուրաքանչյուր խնձորենու մոտ, բնից մի քիչ հեռու: Դրանք ամռան շոգին իրենց լայն տերևներով պաշտպանում են ծառաբնի շրջակա հողը չորանալուց:

Իզուր են որոշ այգեպաններ քրթմնջում ճնճղուկների վրա: Սրանք, թերևս, մեր ամենալավ օգնականներն են: Իրենց բկլիկ ձագուկների համար ծնողները օրական հարյուրավոր թրթուրներ են թռցնում տանում, և դա՝ այգու ծաղկման ու պտղակալման շրջանում, երբ առավել ևս վտանգավոր են լինում վնասատու միջատները: Ամռանը թռչնակների համար այստեղ ու այնտեղ դնում եմ փոքրիկ տաշտեր, որպեսզի նրանք ոչ միայն իրենց ծարավը հագեցնեն, այլև լողանան: Ամեն մի ամանի մեջ տախտակի մի կտոր եմ գցում. այդ «լաստով» թռչունները լողում են ջրի վրա:

Ինձ աջակցում են նաև օգտակար միջատները՝ զատիկները, գնայուկները, ինչպես և անձրևաորդերը: Զատիկները անթիվ-անհամար ուտիճներ են ոչնչացնում խնձորենիների ու սալորենիների վրա: Գնայուկները՝ այդ անկշտում գիշատիչները, ուտում են հողում եղած վնասատուներին, իսկ անձրևաորդը՝ այդ լավ հերկվորը, հողն է փխրեցնում: Այգում որքան շատ է արևածաղիկը, այնքան շատ են լինում զատիկները. սրանք սիրում են բնակվել արևածաղկի գլխին, ինչպես և մաղադանոսի, գազարի, սամիթի հովանոցների վրա:

Առաջին անգամ մոլախոտերի օգնությանը դիմեցի սրանից տասներկու տարի առաջ: Ինձ հետաքրքրում էր այն, թե ինչու անտառային վայրի խնձորենիները, տանձենիները, հաղարջը, մորին, վայրի ելակը համարյա երբեք չեն տուժում վնասատուներից ու հիվանդություններից: Ուսումնա-

*սիրեցի դրանց շրջապատող բուսականությունը և այդ բույսերից մի քանիսը տեղափոխեցի իմ այգին։ Այդ ժամանակվանից մոլախոտերը դարձան իմ բարեկամները։ Մոլախոտերը օգտագործում եմ խնձորենու պըտղակերների ու պղնձաբզեզների դեմ, սև հաղարջենու և փշոտ հաղարջենու հրաթիթեռների դեմ, երկրաչափ կոչվող թրթուրի, ինչպես և՝ մըկների ու առնետների դեմ։*

*Պտղակերը խնձորենու վրա է հարձակվում սրա ծաղկելուց անմիջապես հետո։ Փոքրիկ թիթեռը իր ձվերը դնում է նորաբաց ծաղկաթերթերի վրա, և դրանցից մեկուկես շաբաթ անց դուրս են գալիս թրթուրներ, որոնք կրծոտում են նոր-նոր ձևավորված խնձորիկները։ Պտղակերների թիթեռները տանել չեն կարողանում օշինդրի և այգու մեղվամուշկի հոտը։ Դրանցից ես պատրաստում եմ լուծույթ, և մթնշաղին, երբ որսի են դուրս գալիս վնասատուները, սրսկում եմ խնձորենիները 3—4 անգամ՝ 5—6 օրվա ընթացքում։*

*Երբեմն խնձորենու ճյուղերից կապում եմ մեղվամուշկի կամ օշինդրի փնջեր։ Չեմ խուսափում նույնիսկ մի քանի թուփ տնկել ծառերի տակ, երբեմն՝ կանեփի հետ միասին։ Խնձորենու պղնձաբզեզի դեմ ամենից առաջ օգտագործում եմ հազարտերևուկի թուրմը։*

*Երբեմն, քամի չեղած օրերին, պղնձաբզեզը լրիվ ոչնչացնելու համար ես ծխախոտով այգին ծխահարում եմ։ Դրա համար խնձորենիների միջև գոմաղբի, աղբի, թեփի կույտեր եմ սարքում, վառում և կրակի վրա գցում ծխախոտի մանրած տերևներ ու ցողուններ՝ ամեն մի խարույկին մոտ մեկուկես-երկու կիլոգրամ։ Նիկոտինը ոչնչացնում է մանր միջատներին։*

*Դուք, հավանաբար, տեսել եք, թե ինչպես են ծակկվում ու սարդոստայնով պատվում հաղարջի ու սև հաղարջի պտուղները։ Այդ կանխելու համար պետք է ծառերի միջև կամ դրանց մոտերքը տնկել շամբուկի թփեր, կամ թե վաղ գարնանը դրանց ճյուղերը խրել խոնավ հողի մեջ, որ տերևակալեն։ Այդ բույսի հոտը հրաթիթեռի համար խիստ տհաճ է։ Այդպիսի ծառայություն ձեզ կմատուցի նաև մշակովի դաղձը՝ անանուխը։ Բայց սա մի թերություն ունի. շատ է բազմանում, հարկ է լինում մի մասը արմատահան անել։ Ես սրանք էլ դեն չեմ շպրտում. կապում եմ հաղարջի և սև հաղարջի թփերին։*

*Հրաթիթեռից ծառերը փրկելու մյուս միջոցը ծխախոտի մանրուքով փոշոտելն է կամ հազարտերևուկի, դեղատնային երիցուկի թուրմով սրսկելը։*

*Իսկ ինչպե՞ս վարվել մկների ու առնետների հետ ձմռանը և վաղ գարնանը, երբ քաղցը նեղում է նրանց։ Դրա համար պետք է աշնանը խնձորենու կամ տանձենու բներին կապել շնալեզվի փնջեր, կամ թե շաղ տալ ծառերի տակ. այդ բույսի կայուն բուրմունքը պահպանվում է ձյան տակ ամբողջ ձմռանը։ Շնալեզվի բույրը մկներին հեռու կպահի ծառերից։*

— Թույլ տվեք գոնե վերջին անգամ երգել։

Թույլտվություն ստանալով, նա կանգնեց նավացռուկին և քնարի նվագակցությամբ աստվածների փառքի հիմնը երգեց։ Երբ վերջին հնչյունները մարեցին, երգիչը պարեգոտն անգամ չհանելով, նետվեց ալեկոծվող ծովը։

Թիավարները համոզված, որ Օրիոնը ծովի հատակն է իջել և իրենց հանցագործությունը չի բացահայտվի, հանգիստ շարունակեցին նավարկել։

Բայց երգիչը չէր խեղդվել։ Ջրում ընկղմված, նա հանկարծ զգաց, որ ինչ-որ բանի հրումից բարձրանում է ջրի երես։ Խորը շնչելով և ետ նայելով՝ Օրիոնը տեսավ դելֆինին, որն իր գլուխը պահում էր ջրի վրա։ Այդպիսով դելֆինը օգնեց երգչին ափ հասնել։

Գալով թագավորի մոտ, Օրիոնը պատմեց տեղի ունեցածը և խնդրեց պատժել թալանչիներին։ Բայց նրա պատմածը այնքան անհավանական թվաց, որ թագավորը հրամայեց բանտարկել երգչին, մինչև նավը վերադառնա։

Վերջապես նավը ժամանեց։ Թագավորի մոտ կանչված թիավարները ասացին. «Օրիոնը ողջ և առողջ ուրիշ քաղաք է իջել»։

Այդ ժամանակ թագավորի ազդանշանով ներս բերին Օրիոնին, նույն պարեգոտով, որով նա ըստիպված էր եղել ծովը նետվել։ Սարսափած հանցագործները ամեն ինչ խոստովանեցին։

Օրիոնը, ի պատիվ իր փրկության, իր հայրենիքում՝ Լեսբոս կղզու Տաինարոն տաճարում, պղնձյա արձան կանգնեցրեց, որը պատկերում էր մարդուն դելֆինի վրա։

Այդ նույն ժամանակ Միջերկրական և Սև ծովի ափերին տարածված հունական քաղաքներում մետաղադրամներ էին կտրում, որոնց վրա պատկերված էր դելֆինին հեծած մարդ։

## ԻՄ ԱՌԱՋԻՆ ՔՆՆՈՒԹՅՈՒՆԸ

Երբ մի բան եմ գրելիս լինում, Համիկը գալիս, կանգնում է կողքիս։ Պատահում է, գրածս չեմ հավանում, ջնջում, նորից եմ գրում։ Նայում է, նայում ու ասում.

— Ի՞նչ ես գրում-ջնջում, հո երեխա չե՞ս։

## ՄԱՆԿԱՊԱՐՏԵԶՈՒՄ

Համիկին սովորեցրի մեկից տասը հաշվել։ Նույն օրը սովորեց։

— Տասից այն կողմ էլ թիվ չկա՞,— հարցրեց նա։

— Կա, ինչո՞ւ չէ՝ հարյուր, հազար, տասը հազար...

— Մինչև հարյո՛ւրն էլ սովորեցրու։

— Դպրոցում, Համի՛կ ջան, դպրոցում կսովորես։ Բա դպրոցում ի՞նչ պիտի անես։

— Դպրոցում էլ մինչև հազարը կսովորեմ։

Ոտանավորի պես մինչև հարյուրը սովորեց, հետո էլ սովորեցրի թվանշանները գրել։

— Մեր մանկապարտեզը երկու հարյուր քսանհինգերորդն է, պապա՛, գրի՛ր մեր մանկապարտեզի համարը, ես սովորեմ։

Գրեցի։ Նայե՜ց, նայե՜ց, աչքերը խորամանկ թարթեց, ծըպտաց.

— Սխալ ես գրել, սա երկուս է, սա էլ է երկուս, սա հինգ է։ Հարյուրը չես գրել։

ՀԱՅԿԱԶ ՄՈՒՐԱԴՅԱՆ






## ԲԱՌԱՇՂԹԱ-ԽԱՉԲԱՌ



1. Սովետական նշանավոր քանդակագործուհի։ 2. Կոմիտասի երգերից։ 3. Հայ ծովակալ։ 4. Անգլիացի կին գրող։ 5. Ռուս հանճարեղ շախմատիստ, ռուսական շախմատային դպրոցի հիմնադիրը։ 6. Հայ նշանավոր ճարտարապետ, Լենինի դամբարանի շինարարության պետը և գլխավոր ինժեները։ 7. Ջրվեժ՝ Հյուսիսային Ամերիկայում։ 8. Ալ. Սպենդիարյանի օպերան։ 9. Եվրոպական պետության մայրաքաղաք։ 10. Դեղաբույս։ 11. Քաղաք՝ ՍՍՀՄ-ի եվրոպական մասում։ 12. Քաղաք, որտեղ լույս է տեսել հայերեն լեզվով առաջին տպագիր գիրքը։ 13. Պետություն՝ Ամերիկա աշխարհամասում։ 14. Հյուսիսային բևեռի անվանումը։ 15. Հայկական կինոնկար։ 16. Հնդիկ գրող։ 17. Ժամանակի միավոր։ 18. Ջրերի բազմություն։ 19. Հերոս պիոներ։ 20. Կաթնամթերք։ 21. Հնդկաստանի ազգային-ազատագրական շարժման առաջնորդ։ 22. Հայ նշանավոր բանաստեղծ։ 23. Ռուս ականավոր ծովակալ, Սևաստոպոլի պաշտպանության հերոս։ 24. Լեհ նշանավոր կինոռեժիսոր։ 25. Հայոց ամենահին աստվածը դիցաբանության մեջ։ 26. Դետալների չքանդվող միացման տարր։ 27. Քաղաք՝ Հեռավոր արևելքում։ 28. Հայ արձակագիր։ 29. Սովետահայ բանաստեղծ։

Կազմող՝ ԱՐԱՄ ԲԱՂՐԱՄՅԱՆ

# ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Իր բարձրիկ տեղից
Աշնանն է միայն
Իջնում նա հողին,
Երբ նրա կանաչ
Ժպիտն է դառնում
Տխուր ու դեղին:

([illegible])

Ծնվում են հողից,
Ներկվում են դեղին
Ու պառկում անվերջ
Միևնույն կողին:

([illegible])

Մանկուց միշտ լավն է
Մեզ սովորեցնում,
Թեև ինքը միշտ
Լուռ, համր է մնում:

([illegible])

Լույսից ծնվում,
Սնվում լույսով
Ու ապրում է
Նրա հույսով:

([illegible])

ՎՐԵԺ ՎԱՐԴՈՒՆԻ

# ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

«ՊԻՈՆԵՐ» № 3

1. Տարոն: 2. Տայոն: 3. Հոնդան: 4. Դոն: 5. Դոնբաս: 6. Բասրա: 7. Այան: 8. Յանա: 9. Անապա: 10. Ապարան: 11. Փարանա: 2. Անադիր: 13. Իրաք: 14. Արարա: 15. Արական: 16. Կանարյան (կղզիներ): 17. Նարյան-Մար: 18. Մարմարա (ծով): 19. Մարակայբո (քաղաք, ծոց, լիճ՝ Վենեսուելայում): 20. Բոմբեյ: 21. Բեյշան (բարձրավանդակ՝ Հյուս. Չինաստանում): 22. Ճանհայ: 23. Հայաստան: 24. Տանգանիկա: 25. Անի: 26. Նիկարագուա: 27. Գուամ (կղզի՝ Խաղաղ օվկիանոսում): 28. Ամման: 29. Մանիլա: 30. Լաոս: 31. Սոմալի: 32. Մալի: 33. Լիսաբոն: 34. Բոնն: 35. Նեպալ: 36. Այդան: 37. Դանիա: 38. Նիագարա: 39. Արարատ: 40. Ատակամա: 41. Կամա: 42. Ամազոն: 43. Ջոնդյան (կղզիներ): 44. Անգարա: 45. Արաքս: 46. Սամոս (կղզի՝ Էգեյան ծովում): 47. Սևուտա (քաղաք՝ Մարոկկոյում):


Լույս է տեսնում 1928 թվականից:



# ՊԻՈՆԵՐ

№ 4 ապրիլ 1974 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝
ՆԿ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ


Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԽՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

*Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15:*
*Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96:*

ՎՖ 04302 : Պատվեր 482: Տպաքանակ՝ 80100: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 11/IV 1974 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9.

Տեղյանքի № 91:




